ՆՈՐ ՃԱՇԱԿ ԴՊՐՈՒԹԵԱՆ

ԿԱՄ

*ՀԱՄԱՌՕՏ*

# ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ





Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ

ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

*ԵՐՈՒՍԱՂԷՄ*

**1868**

# ՆՈՐ ՃԱՇԱԿ ԴՊՐՈՒԹԵԱՆ

ԿԱՄ

## ՀԱՄԱՌՕՏ ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

Muratean, Eghiaçar
Nor chashak doruṫean...

# ՆՈՐ ՃԱՇԱԿ ԴՊՐՈՒԹԵԱՆ

ԿԱՄ

# ՀԱՄԱՌՕՏ ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

---

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ
ԵՂԻԱԶԱՐ ՄՈՒՐԱՏԵԱՆ

---

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ ՍՐԲԱԶԱՆ
ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԵՐՈՒՍԱՂԵՄԱՅ




Ի ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ
1868–ՌՅԺԷ

# ԱՌ ՎՍԵՄԱՓԱՅԼ
# ԳՐԻԳՈՐ ԷՖԷՆՏԻ ՕՏԵԱՆ

## ՈՒՂԵՐՁ

Որ զտարագիրըդն Կալլիոպ ի հովաստան
մայրեաց Գողթան,
Առ. քեզ ժողովեցեր հովանացեալ նմա
հանճարովդ.
Հարեւոյս ի նորին գեղ լ՞բր չնչեցեր
եռանդն հրակէզ,
Ի ժպիտ նորին բերկրիչ եւ յարտասուս
նորա ազգայ.
Մեկենա՛ս, ինձ երանի՛ թէ զապաշնորհս
ընկալցիս ձօն,
Եւ անզօր ձայնի քնարիս անմահութեան
ծարաւելոյ
Լիցի թեւ երկնասլաց՝ վսեմականին
Գրիգոր Օտեան :

Ե. Մուրադեան

# ՆԱԽԱՇԱՒԻՂ

Դպրութիւնը կամ գրականութիւնն է ուսումն հին և նոր մատենագրաց ընտիր գրուածոց ։

Դպրութիւնը ( Littérature ) կը կրթէ մարդուն ճաշակը, կ'ազնուացնէ բարքը, կը բարձրացնէ միտքը, կը վառէ երեւակայութիւնը, և աշխարհիս լոկ շահադիտական ու ծառայական գաղափարներէն ազատելով՝ իր բուն նպատակին՝ այսինքն անմահութեան հասնելու անարգել թռիչք մը կուտայ անոր ։

Ըսկէ կը հետեւցնենք որ ինչպէս մասնաւորի, անանկ ալ ազգի մը ազնուութիւնը, կրթութիւնն և յառաջադիմութիւնը իր դպրութենէն կախումն ունի, և համեմատաբար ազգ մը քաղաքակիրթ կամ ոչ-քաղաքակիրթ կ'ըսուի՝ որչափ իր գրագէտները աւելի կամ նուազ ըլլան ։

Երեք մասի կը բաժնուի գրագիտութիւնը. Տրամաբանութեան, Ճարտասանութեան և Բանաստեղծութեան ։

Ճարտարախօսութիւնն ալ երկու կարգի կը բաժնուի—1. պարզ Գրուածներ, կամ անոնք որ աշխարհաբար կը գրուին, կը խօսուին. —2. բուն ճարտասանութիւն, որ կը պարունակէ Ատենական, Դատաստանական, Ս—[illegible], Ակադեմիի ճառեր և այլն։

Այս փոքրիկ գործիս մէջ չեմ խօստանար ճարտասանութեան ընդարձակ ամէն կանոնաց բովանդակութիւնը տալ. այլ աւելի համեստ սահմանի մը մէջ ամփոփուելով բաւական կը համարիմ գրուած մը վայելուչ և ազդու ընելու համար ինչ որ պէտք է՝ ցուցընել, հետեւելով այս նիւթիս վրայ գրող Պաղղիացի երեւելի վարժապետաց. Լըֆրանգի և Կերարի, որոց ոչ միայն հետեւող, այլեւ թարգմանիչն ըլլալ ինծի փառք կը համարիմ, բաւական է որ մեր ազգային սիրուն պատանեկութեան ծառայութիւն մը մատուցած ըլլամ։

Ե. Մ.

# ԳԻՐՔ Ա.

## Ի՞նչ է ճարտասանութիւնը :

1—. Ճարտասանութիւն կ'ըսուի այն գրուածը որ բնութեամբ ճարտարախօսին միտքը կ'ուղղէ և համոզելու կանոններ կուտայ։

2—. Բնութեամբ ճարտարախօս ըսի. քանզի ճարտասանութիւնը արհեստ չէ, այլ բնատուր ձիրք։ Եթէ անիկայ արհեստ մը ըլլար, հարկ էր որ ուզողը ճարտարախօս ըլլար։ Արդ՝ քանի որ այսպէս չէ, ուրեմն կրնանք ըսել որ ճարտասանութիւնը կ'օգնէ ճարտարախօսին և անոր գործնական կրթութիւն մը կուտայ։

3—. Բայց իր աւանդած դասերը կրնան միօրինակ օգտակար ըլլալ անոնց ալ՝ որոնք վայելուչ և ազդու բան մը գրել կ'ուզեն

## ԳԼՈՒԽ Ա.

### Գիւտ կամ Գաղափար:

4—. Խօսելէ և գրելէ առաջ հարկ է որ գիտնանք թէ ի՛նչ պիտի խօսինք. ասոր կ'ըսենք Գիւտ կամ Գաղափար: Բ. Թէ գաղափարներս ի՛նչ կարգով բացատրելու ենք. ուստի ասոր ալ կ'ըսուի Տրամաբանութիւն: Գ. Թէ ի՛նչպէս պէտք է բացատրենք գաղափարնիս՝ որպէս զի վայելուչ ըլլայ, ասոր ալ կ'ըսուի Ոճ:

5—. Ուրեմն երեք բան կայ դիտելու խօսուածքի մը կամ գրուածքի մը մէջ. Ստեղծումն, Տրամաբանութիւն, և Ոճ:

6—. Այս երեք գլխոց վրայ կարգաւ պիտի խօսինք.

---

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Ստեղծումն կամ Գիւտ:

7—. Ստեղծումն կամ Գիւտ կ'ըսուի մը-տաց այն կարողութիւնը որ կ'ընդարձակէ ու

և իցէ նիւթ մը իր պարզած հանգամանքներովը. ասիկայ նոյն ինքն մշակեալ և փառաւոր երեւակայութիւնն է ։

8 — Որ և իցէ նիւթ մը ընդլայնման երեք աղբիւր ունի. Ա. եղելութիւնը յայտնել. Բ. փորձը լուծել. Գ. ապացուցանել. գրուած մը այս երեք նպատակին մէկը կամ երեքը միանգամայն կրնայ ունենալ ։

---

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Ընդլայնումն եղելութեամբք :

9 — Եղելութիւնը նոյն ինքն գաղափարն է. ուստի երբ աշակերտ մը տակաւին գաղափար չունի նաւաբեկութեան վրայ, անոր նաւաբեկութեան նկարագրութիւն ընել տալ աւելորդ է, մանաւանդ թէ անօգուտ ։ Այս համար աշակերտաց գրած շարադրութիւնները ընդհանրապէս փայլուն ածականներով, կրկնութիւններով լեցուն են ։ Տեսնենք թէ ինչ դարմանն տանելու է գաղափարաց պակասութիւնը լեցնելու համար ։

10—. Գաղափար տալու համար երկու միջոց կայ. Ա. Նէրը-Բի-նները տե-ղել. օրինակի համար, երբ կ'ուզենք արեւուծագումը նկարագրել՝ նախ պիտի մէկ կամ աւելի անգամ հանդիսատես ըլլանք այս երեւոյթեանը, որպէս զի գաղափար ունենանք։ Նշանաւոր ինչ ճշգրիտ եւ սքանչելի կերպով Գաղղիացի հեղինակ մը կը նկարագրէ այս։

"Կը տեսնես որ հեռուէն կ'իմացնէ "իր գալուստը՝ բոցոյ ճաճանչներ առջե- "ւէն սփռելով. երթալով հորդեհը կ'ա- "ւելնայ, կարծես թէ բոլոր արեւելք "բոցի մէջ է։ Այս պայծառութիւնը "տեսնելէդ ետքը երկար ատեն աչքդ "անկած կ'ըսպասես աստղին երեւնալուն. "ամէն վայրկեան կարծես թէ պիտի երե- "ւի. վերջապէս մէյմալ կ'երեւի. հրացեալ "գունդ մը դուրս կը նետուի եւ անմիջա- "պէս կը լեցընէ բոլոր տարածութիւնը. "խաւարին քօղը կը պատռի եւ կ'իյնայ. "մարդը վերստին կը տեսնէ իւր բնակա- "րանը գեղեցկացած. կանանչեղէնները "եւ մարգագետինը նոր զօրութիւն մը "զգեցած են գիշերը. նորածին լոյսը լու-

« սաւորելով զանոնք՝ արեւուն առաջին ճա-
« ռագայթները ոսկիի գոյն տալով անոնց,
« զանոնք ծածկող ցօղին մէջ անդրա-
« դարձել կուտան լոյսը եւ գոյները։ Ան-
« գեցիկ թռչունները պար կը կազմեն եւ
« կ'ողջունեն միաբերան զ՚այրն կենաց.
« այս վայրկենին մէկը չը լռեր։ Իրենց
« դայլայլիկը տակաւին տկար ըլլալով՝ ա-
« ւելի ծանր եւ անոյշ է քան թէ բոլոր օր-
« ուան մէջ. քանզի անուշակ զարթուց-
« ման, մը թմրութիւնն ունի։ Բոլոր այս
« առարկայներուն մրցումը մարդուս ըղ-
« գայարանաց այնպիսի զուարթ տպաւո-
« րութիւն մը կ'ընէ, որ մինչեւ հոգին
« կ'անցնի։ Այս առեն կէս ժամու չափ
« զմայլում մը կայ, որուն ոչ ոք կրնայ դի-
« մանալ։ Այսչափ մեծ, գեղեցիկ, հեշ-
« տալի տեսարանի մը վրայ ոչ ոք կրնայ
« պաղ արիւնով նայիլ»։

Ահաւասիկ սքանչելի նկարագրու-
թիւն մը, որուն հեղինակը շատ անգամ
հանդիպատես եղած է արեւուն ծագմանը։

Նոյնպէս հետեւեալ օրինակը.

« Զուեսանիցեմ զերեւս պատերազմողա-
« ցըն, զքաջըգ տրտմագին 'ի խոնարհ

«կամօքն. յօժարն ահաւորին և դէմք խո-
"ժոռք. աչք արիւնախառն և սիրտ 'ի
"Թեղոջ. 'ի վեր վազեն և զկուրծս բաղ-
"խեն՝ ժողովեալք գումարեալք համօ-
"րէն, զանգի հարեալք 'ի մի վայր ժողո-
"վեալք և ճակատեալք բազում կար-
"գօք, առաւել յօրինուածովք»:

Ճարտարախօս Ոսկեբերան՝ այս բնական նկարագրութեան հեղինակը կամ շատ անգամ տեսած է պատերազմողներ և կամ պատերազմի նկարագրութիւն շատ կարդացած:

11—. Գաղափար ստանալու Բ. միջոցն է ընթերցումն. բայց ընթերցումն ընտիր հեղինակաց և ոչ թէ խառն 'ի խուռն անպիտան պատմութեանց, վիպասանութեանց. ասոնք փոխանակ ողջուն գաղափար տալու՝ միտքը կը խանգարեն, և փոխանակ ճաշակը կրթելու՝ այնպիսի վնասակար ազդեցութիւն մը կ'ընեն անոր վրայ, որ ժամանակը և ընտիր հեղինակաց յաճախ ընթերցումն անգամ չեն կրնար բոլորովին ջնջել: Գաղղիական Թատրերգութեան հրաշալիքը; Ռասինը, իր մանկութեան մէջ շատ կը կարդար յունարէն

անպիտան ողբերգութիւն մը. այս գործքը իր ազդեցութիւնը Ռասինի ճաշակին վրայ ներգործեց՝ մինչեւ անգամ սքանչելի Անդրոմաքին մէջ:

12—. Մէկ քանի մասնաւոր միջոցներ ալ կան եղելութիւնները ընդլայնելու՝ և են. Նախընթաց և յարակից հանգամանք, Թուարկութիւն մասանց, սահման, պատճառք և գործք, նմանք և հակառակք:

---

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

Նախընթաց եւ յարակից հանգամանք:

13—Երբ բան մը գրես, թէ՛ մեծ ըլլայ և թէ պարզ պատմութիւն մը կամ նկարագրութիւն մը, զգուշութեամբ երկրորդական պարագաները յիշէ, որոնք գլխաւոր եղելութենէն առաջ կամ վերջը պատահած են, և անոր հետ սերտ կապակցութիւն ունին. Միով բանիւ՝ այնպէս պատմէ որ իբր թէ եղելութիւնը ներկայ ըլլար. զրուցէ թէ ո՞վ էր, ի՞նչ կերպով եղած է. Օրինակ առնենք Անկարայեցի եղբարց

Անտիոքոս Թագաւորին հետ ըրած պա-տերազմը ։

Մէկ քանի վատ եւ հայրենեաց մատնիչ Հրեաներ կ'երթան Սուրիոյ Թագաւորին խմաց կու տան՝ թէ Հրեաները կը պատրաստուին Հրէաստան եղող բոլոր Սուրիները վռնտելու, Բեթովլըս քաղաքը ամրացուցին. արդ փութա անոնց առաջքը առնելու ։

Հա պատմութիւնը ։

Նախընթաց. "Իբրեւ զայն լուաւ Թագա-
"ւորն, բարկացաւ յոյժ, հրամայեաց կո-
"չել զպարեկաւսն իւր եւ զիշխանս որ 'ի
"վերայ զօրացն էին. եւ յայլմէ Թագաւո-
"րութենէ եւ յայլոց կղզեաց եկին առ նա
"զօրք բազումք 'ի վարձու ։ Եւ էր Թիւ
"զօրաց նորա հարիւր հազար ասպար 'ի
"ձեռին տիգաւոր հետեւակ, եւ քսան
"հազար հեծեալ սպառազէն, երեսուն եւ
"երկու փիղք վարժեալք երիվարիւք ։ Եւ
"եկին անցին ընդ Եդոմ. Ճակատեցան
"պատեցին զԲեթօվլը քաղաք, եւ մարտ
"պատերազմի եղին շուրջ զնովաւ ա-
"ւուրս բազումս ։ Կազմեցին շուրջ ըզ-
"մանգղիոնս եւ մեքենայս ։ Եւ ելին 'ի

« քաղաքէ անտի այրեցին զմենքենայսն, և
« մարտ եդին ընդ նոսա քաջութեամբ ։
« Զուեալ, խաղաց, գնաց Յուդայ 'ի
« միջնաբերդ ամրոցէ անտի, և եկն բա-
« նակեցաւ 'ի Բեթսակարիա, դէմ յանդի-
« ման բանակի արքային ։ Կանխեաց ընդ
« առաւօտն Թագաւորն, առ զբանակն,
« տարաւ բանակեցոյց 'ի միջոյ անտի ընդ
« ճանապարհին Բեթսակարեայ, և զզօրսն
« սփռեաց ճակատեցոյց 'ի մարտ պատե-
« րազմի ։ Փող հարին կազմեցին պատ-
« րաստեցին զփիղսն, ճաշակեցուցին յա-
« րիւն խաղողոյ և 'ի կմուռո և 'ի գինիս .
« կարգեցան, բաշխեցին 'ի գունդս գուն-
« դըս, և կարգեցին առ փիղ փիղ հազար
« հազար այր սպառազէն, և պահապան
« գլուխ գնդին հինգ հազար հեծեալ
« վառեալ նժոյգ 'ի ձեռին՝ պաշտպան
« գնդին. զի ուր և կայցեն գազանքն՝
« կայցեն և նոքա, և ուր և գնայցեն՝
« գնայցեն և նոքա ։ Եւ փանդակակապ
« մարտկոցս մենքենայիւք 'ի վերայ փղացն
« կազմեցին, զփղապանն 'ի վերայ գլխոյն
« նստուցին, և զայլ այրուձին յաջ և յա-
« հեակ Թեւս գնդին կազմեցին ։

“Իբրեւ անտի արեգակն ծայրս ար-
“ձակէր, առ հասարակ զրահաւոր պատե-
“նազէն պղնձապատ վահանացն նշոյլքն
“զերամբքն փայլատակէին, եւ ճառա-
“գայթք հատանէին իբրեւ ’ի փայլատա-
“կանց հրոյ։ Եւ երկայնէր ճակատն,
“զեղջր որ զբարձամբք լերանցն, որ զձո-
“րովք եւ զխորովք եւ զդաշտիւք. եւ խա-
“ղային յառաջ առ հասարակ կարգեալք
“եւ կազմեալք. միաբան շարժէին առ հա-
“սարակ ամենեքեան որ լսէին զձայն բար-
“բառոյ բազմութեանն. զչաչիւն զինու,
“զշառաչիւն զերիվարացն թնդիւն, զոռ-
“նաձայն վահանաւոր վառելոցն”։

(Պէխաւոր Իրողութիւն.) “Այն է-
“հաս Յուդայ իւրով գնդաւն, կարգե-
“ցաւ, կազմեցաւ, ճակատեցաւ, պա-
“րատեցաւ, յարձակեցաւ, ’ի դիմի հա-
“րաւ գնդի Թագաւորին։ Յայնմ տեղ-
“ւոջ յանդիման Թագաւորին վեց հար-
“իւր հեծեալ սպառազէն դիթաւալ կա-
“ցուցանէր։ Յայնմ վայրի դէտ ակն ’ի
“վեր ամբառնայր Եղիազար աւարան տե-
“սանէր մի ’ի գաղանաց անտի վառեալ
“զարդարեալ, ’ի զէն արքունի վառեալ

« և նշանս արձակեալ, համարեցաւ թէ
« արքայն իսկ 'ի նմին լցէ : Յարձակեցաւ
« 'ի վերայ գնդին, յաջ և յահեակ կոտո-
« րեաց . չոգաւ մինչեւ եհաս 'ի փիղ ան-
« դրը նշանաւոր, զէն վերացոյց և եմուտ
« 'ի ներքոյ. եհար և անդէն կործանեաց:
« և էջ նստաւ փիղն 'ի վերայ՝ և զնա ան-
« դէն ճմլեաց » :

(Ղեւոնդ.) « Նոքա իբրեւ տեսին
« զզօրութիւն զօրաց Թագաւորին, խոյս
« ետուն 'ի նոցանէ . սակայն յոր կողմ և
« գային, ընդ առաջ լինէին նոցա գունդ-
« քըն արքունի, մինչեւ եկին 'ի կողմանս
« Երուսաղէմի . և եկն արքայն և բանա-
« կեցան 'ի Հրէաստանի և 'ի լեառն Սէ-
« իրն » :

Այս պատմութիւնը կատարեալ է ա-
մեն կերպով: Հոս պայծառ կը տեսնուի
Թագաւորին զօրութիւնը, ահաւոր պատ-
րաստութիւնները, ուր, ինչ ատեն պատե-
րազմիլը, վերջապէս Մակաբեանց քաջու-
թիւնը և Եղիազարու նահատակութեան
հանգամանքները և Իսրայէլի պարտու-
թեան պատճառը:

14. Ինչպէս ըսինք՝ նախընթաց և

Հետեւորդ հանգամանքները անսպառ՝ աղ-բիւր են ընդլայնման · բայց պէտք է ըզ-գուշութեամբ գործածենք այս, և եղե-լութիւնը չի խեղդենք անօգուտ և խիստ աննշան պարագաներով։ Զգուշանալու է մանաւանդ նախընթացները շատ հե-ռուէն առնելէն։

Ռասինի Պափաւէր* կատակերգութեան մէջ դատախազը այսպէս կ՚ընէ իր նիւթին առաջարկութիւնը ·

«Դեռ աշխարհ չստեղծուած», և այլն · դատաւորն ալ կը գոչէ · «Պ. փաստաբան անցնինք ջրհեղեղին»։

15—. Շատ անգամ հանգամանքնե-րը անոր համար յառաջ կը բերուին, որ եղելութիւնը ծանրացնեն կամ թեթեւ-ցնեն, օրինակի համար · գողութիւնը յանցանք է, բայց երբ մէկը սովամահ ըլ-լալու վտանգի մէջ հաց գողնայ, արդա-րանալու իրաւունք ունի։ Հոս հանգա-մանքը թեթեւցուց եղելութիւնը։

Դարձեալ, ուրիշին զարնելը յանցանք է, բայց եկեղեցւոյ մէջ ատենի մէջ զար-նելը աւելի մեծ յանցանք է։ Հոս ալ պա-րագան ծանրացուցիչ եղաւ։

# ՅՕԴՈՒԱԾ Դ.

## Թուումն մասանց, Սահման, Նկարա_գրութիւն։

16. — Թուումն մասանց է ամբողջի մը բոլոր մասերը թուելով՝ զայն յայտնել։

Փոխանակ ըսելու՝ Բոլոր քաղաքացիքը սրէ անցուցին, կ'ըսուի․ այր և կին, ծեր և տղայ, Բոլորն ալ սրէ անցուցին։

Մասիլեօն փոխանակ ըսելու որ փառասէրը բան մը չկրնար վայելել, խիստ գե_ղեցիկ թուումն մասանց ընելով կը բա_ցատրէ այս խօսքը․ «Փառասէրը բան մը «չվայելեր․ ոչ իր փառքը, քանզի մութ «կ'երեւայ իրեն․ ոչ իր աստիճանը, զի «աւելի վեր ելնել կ'ուզէ․ ոչ իր յաջո_«ղութիւնը, քանզի իր առատութիւնը «չքաւորութիւն կը թուի իրեն․ ոչ իրեն «եղած պատիւները, որովհետեւ ասոնք «թունաւորուած կը համարի անոնցմով որ «ինքն ալ պարտաւոր է ուրիշներուն ընել․ «ոչ իրեն եղած շնորհքները, զի դառն կ'ե_

“ րեւան իրեն, երբ հարկ ըլլայ իր ախոյ-
“ եաններն ալ մասնակից ընել անոնց.
“ ոչ իր հանգստութիւնը, քանզի թշուառ
“ կ՚ըլլայ որչափ որ հարկ ըլլայ հանդարտ
“ մնալ ”:

Ուրիշ օրինակ.

“ Ուստի Նաւն 'ի բախմանէ վայրենի
“ ալեացն խորտակեցաւ. Թեւոցն ձեռ-
“ նարկութիւն քայքայեցաւ, կայմն ամ-
“ բարձման 'ի կայից իւրոց խլեցաւ, առա-
“ գաստին Թռչարան յանկարկատելի ծուէ-
“ նըս պատառեցաւ, շինուածոյն շուք ան-
“ զարդեցաւ, առասանք ձգողականացն
“ խզեցաւ. տեսարան գլխոյն դիտակի խո-
“ նարհեցաւ, ապաւանդակին պարան կըտ-
“ րեցաւ, ապաւինութիւն խարսխին լու-
“ ծաւ, լուծք ստուարք ամոլիցն կցորդու-
“ թեան բաժանեցան, սամիք ուղղչացն հե-
“ տոց գալարեցան, լաստ հիմանն հաստա-
“ տունի ընկղմեցաւ, ղեկացն կառուցմունք
“ անուրբէն սուղան ”: Վերջապէս Նաւին
ուրիշ շատ մասերը թուելէն ետքը կ՚ըսէ.
“ Նաւուղիղն հանդէպ Նաւին դեգե-
“ րեալ ողբայ, ձեռն 'ի ծնօտի եդեալ ար-
“ տասուաց գետս հեղուցանէ ”:

17. — Սահմանն է առարկայի մը ստո֊
րոգելիները կամ էական հանգամանքները
Թուել։ Ահաւասիկ երեք խիստ նշանա֊
ւոր օրինակներ։

«Ի՞նչ է կրօնքը. գերազանց փիլիսո֊
«փայութիւն մը, որ բնութեան կարգը և
«միութիւնը կը ցուցընէ, և մարդկային
«սրտին գաղտնիքը կը բացատրէ. մարդս ՚ի
«բարին յորդորելու ամենէն հզօր շարժիչը.
«որովհետեւ հաւատքը զայն միշտ Աս֊
«տուծոյ ներկայութեան առջեւ կը դը֊
«նէ, և կամաց ու մտաց վրայ հաւատա֊
«րապէս կ'իշխէ. խղճի փոխանորդ մը, որ
«կը պատուիրէ, կը զօրացնէ և կը կատա֊
«րելագործէ ամէն առաքինութիւննե֊
«րը. մարդկային նոր կապերուն վրայ բա֊
«րերարութեան նոր յարաբերութիւն֊
«ներ կը հաստատէ. կը ցուցընէ մեզ որ
«աղքատք մեր պարտատէրներն ու մեր
«դատաւորներն են, մեր Թշնամիք մեր եղ֊
«բայրներն են, գերագոյն Էակը մեր հայ֊
«րըն է։ Արդի կրօնքը, գործնական առա֊
«քինութիւնը, բարոյական օրինակաց ա֊
«մենէն գեղեցիկը, որուն իւրաքանչիւր
«վարդապետութիւնը երկինքէն իջեալ

«բարերարութիւն մ՚ է»։

(Գուարբենոլ Մօրլի։)

Ահաւասիկ արծաթասէր մարդուն նկարագիրը.

«Չիք և չէք ինչ անիմաստագոյն «քան զընչիցն ծառայ. թուի թէ իշխե- «ցէ, և իշխան 'ի գլուխ ունի. թուի թէ «տէր իցէ, և ծառայութիւն հարկանէ. «կապանս փարաքէ զանձամբ, և ուրախ «է. գրգէ զգազանն, և բերկրի. 'ի գերու- «թեան փարեալ, ցնծայ և խայտայ։ Շուն «կատաղի տեսանէ 'ի վերայ դիմեալ ող- «ւոցն, և յանհոգս է. զոր պարտ էր խա- «ռանել և սովամահ առնել, առաւա- «ցեալ յանխնայ շանի առ կուրծան կու- «տէ. զի եւս քան զեւս 'ի վերայ խա- «ղայցէ և ահագինս լինիցի»։ (Ոսկեբերան։)

«Այս աշխարհիս վրայ միայն ճշմար- «տութիւնը արժանի է մարդոյն հետազօ- «տութեանն ու սիրոյն։ Նա ինքն է միայն «մեր մտաց լոյսը, մեր սրտին ուղեցոյցը, «մեր հաճոյից աղբիւրը, մեր յուսոյ հիմը, «մեր արհաւրաց մխիթարութիւնը, մեր «թշուառութեանց ամոքիչը, բոլոր մեր «վշտաց սպեղանին։ Նա ինքն է միայն ազ-

«բիւր հանդարտ խղճի, սակայն խռո-
«վեալին, մոլութեան գազանի տանջանքը,
«առաքինութեան ներքին վարձատրու-
«թիւնը։ Նա միայն կ'անմահացնէ զինքը
«սիրողները, կը փառաւորէ իրեն համար
«չարչարուողներուն շղթայները, ժողովրդոց
«մեծարանքը կը գրաւէ իր մարտիրոսնե-
«րուն և պաշտպաններուն աճիւնին վրայ,
«և պատկառելի կ'ընէ չքաւորութիւնն և
«աղքատութիւնը այն մարդոց՝ որոնք ամեն
«բան ձգեր են անոր ետեւէն երթալու
«համար. վերջապէս նա միայն կը ներշնչէ
«վեհ խորհուրդներ, կը յօրինէ դիւցազն
«ոգիներ, այնպիսի ոգիներ՝ որոց արժանի
«չէ աշխարհս. իմաստուն ըսուելու արժա-
«նաւո՞ր մարդիկ։ Ուրեմն մեր բոլոր ջանա-
«քը պէտք է 'ի գործ դնենք զայն ճանչե-
«լու, մեր բոլոր տաղանդը զայն յայտնե-
«լու, մեր ամեն նախանձախնդրութիւնը
«զայն պաշտպանելու. ուրեմն պէտք է մար-
«դոց վրայ ճշմարտութենէ զատ ուրիշ
«բան չփնտռենք, միայն անով հաճիք ըն-
«կալ ուզենք անոնց. ճշմարտութենէ զատ
«ուրիշ բան չյարգենք անոնց վրայ, չու-
«զենք որ անոնք բաց 'ի ճշմարտութենէ

«ուրիշ բանով հաճելի ըլլալ ուզեն մեզի։ «Միով բանիւ կարծես թէ բաւական է որ « յայտնուի որ զինքը սիրենք, և սիրենք՝ «որպէս զի սորվեցնէ մեզի ինքզինքնիս «ճանչնալ »։ (Մասիյօն։)

18— Նկարագրութիւնն ալ տեսակ մը թուումն մասանց է առարկային ստո-րոգելեաց։ Բայց Սահմանէն կը տարբերի, զի սահմանը իրին բնութիւնը, էութիւ-նը կը յայտնէ, մինչդեռ նկարագրութիւ-նը արտաքին երեւոյթները կը թուէ և կը նկարագրէ. ինչպէս. «Դիցուհւոյն քա-րայրը բլրի մը գաւ 'ի վայրին վրայ էր, ուս-կից կը տեսնուէր ծովը երբեմն հայելւոյ մը պէս փայլուն և շիփշիտակ. և երբեմն անսաստ կատաղութեամբ ժայռերուն հետ զարնուելով կը փշրէր մռմռալով և լեռներու պէս ալիքներ հանելով։ Միւս կողմէն ալ գետ մը կ'երեւար, որուն մէջ ձեւացած կղզիներուն եղերքը ծաղկա-զարդ թմբիներ կային ու բարձր կաղա-մախներ, որոց հպարտ գագաթները մին-չեւ ամպերը կը հանէին։ Այս կղզիները ձեւացնող առուակները կարծես թէ դաշ-տին մէջ կը խաղային. ոմանք մաքուր ջը-

ընդունին օրընթաց թաւալելով, ուրիշները հանդարտ և քնանալով մը. այլ երկայն երկայն պտոյտներ ընելէն ետքը՝ նորէն ետ կը դառնային, ու կարծես թէ այս ամենազուարճ ափունքը չկարենալով թողուլ, իրենց աղբերակունքը կ'ուզէին վերստին դիմել »: Տելեմաք, Նուման, Պօղ և Վիրգինիէ և Յովսէփ Գեղեցիկ կոչուած հրաշալի մատեանները, որոնց հայերէնը ունինք բարեբաղդաբար, գերազանց օրինակներ են նկարագրութեան:

---

## ՅՕԴՈՒԱԾ Ե.

### Պատճառք եւ Գործք կամ Արգասիք:

19.—Երբ եղելութեան մը վրայ գրես, նայէ որ անոր պատճառները և գործերը աղէկ ընդլայնես: Հետեւեալ գրուածին մէջ Նափոլէօն սքանչելի կերպով կը նկարագրէ փառասիրութեան ըրած ազդեցութիւնը փառասէր մարդուն և անոր սրտին վրայ:

« Փառասիրութենէ յառաջ կուգայ կատաղի նախանձը. և այս կիրքը թէ ցած

և թէ վատ է, բայց գրե թէ մեծամեծաց տգիտական մոլութիւնն ու թշուառութիւնն է։ Ուրիշին համբաւոյն վրայ նախանձելով՝ իրենց չեղած փառք մը տուած կը համարին, որ զիրենք կ'անպատուէ և կը նսեմացնէ։ Իրենց մերձաւորաց եղած շնորհաց վրայ նախանձելով՝ կը կարծեն որ անոնք իրենց ձեռքէն կը յափշտակեն։ Ուրիշին գտած ընդունելութեանը նախանձելով, իրենց տաելութեան և անարգանաց առարկայն կ'ընեն այն մարդը, թէ և անիկա իր տրոջը վստահութեամբը և սիրովը վաստկած ըլլայ այն պատիւը։ Նախանձելով մինչև անգամ տէրութեան փառաւոր յաջողութեանցը վրայ, հասարակաց ցնծութիւնը շատ անգամ իրենց գաղտնի և ընտանեկան վիշտ մը կ'ըլլայ։ Իրենց ախոյեաններուն ըրած յաղթութիւնները աւելի դառ'ն են անոնց՝ քան թէ պարտութիւնը թշնամեաց։ Հաւանոյ տանը նման, անոնց տունը սգոյ և տրտմութեան տուն է. երբ Ս՝ուրդէք կը յաղթանակէ, և մայրաքաղաքին մէջ կ'ընդունի ժողովրդեան ծափահարութիւնները։ Ուրիշին փա-

ուաց անձզգայ ըլլալ բաւական չը համա-րելով՝ կը ջանան նաւաստացնել զանոնք բերող միջոցները՝ չարասիրտ խորհրդա-ծութիւններով և քննադատութեամբ, որպէս զի գոնէ ասով մխիթարուին ։ Վեր-ջապէս այս անիրաւ կիրքը ամէն բան կը դառնացընէ . և այսպէս կրնանք ըսել՝ որ մարդս թշուառ կ'ըլլայ կամ իրեն ձախո-ղութեամբ, կամ ուրիշին յաջողութեամ-բը ։ (Մասիյոն․ Ինի չարէմ ։)

## ՅՕԴՈՒԱԾ Զ.

### Բաղդատութիւն, Նմանութիւն եւ Հակա-ռակութիւն :

20—Այս երեք ձեւերուն պաշտօնն է գաղափարաց կամ եղելութեանց մէջ նը-մանութիւն կամ աննմանութիւն դնել ։

21—. Բաղդատութիւնն է երկու իրե-րու կամ եզերու վրայ խորհրդածել, և եզրակացութիւն մը հանել մէկուն՝ կամ միւսոյն 'ի նպաստ ։

Ասիկա աւելի բանաստեղծութեան մէջ կը գործածուի ։ Երեք առթի մէջ

բաղդատութիւն կ'ըլլայ․ Ա․ հաւասարէ առ հաւասար․ Բ․ փոքրէ առ մեծ․ Գ․ մեծէ առ փոքր։

Ա․ Հաւասարէ առ հաւասար․

## Մա՛հ որդւոյն Իդոմենեայ։

«Ընկաւ տղան ու իր արեանը մէջ թաւալեցաւ․ աչուըներուն վրայ մահուան ստուերները պատեցին․ կէս մը կը բացուէին, բայց հազիւ թէ լոյս կը գտնեն, չկարենալով անոր դիմանալ՝ նորէն կը գոցուին, ինչպէս դաշտին մէջ կեցած աղուոր շուշան մը թէ որ սայրասուր խոփով արմատէն զարնուի կտրուի՝ կը տկարանայ կ'իյնայ, և թէպէտ կորսնցուցած չէ այն ձիւնափայլ սպիտակութիւնը, այն ակնախտիղ պայծառութիւնը, բայց ալ երկրէն սնունդ չառներ, և կեանքը կը մարի․ այսպէս նաեւ Իդոմենեայ որդին ծաղկափթիթ հասակին մէջ անգթաբար հնձուեցաւ իր հօրմէն՝ ինչպէս ծաղիկ նորաբոյս»։ (Տելէմաք։)

Այս տեսակ բաղդատութիւնը նմանութեան հետ նոյն է։

Բ. Մեծէն առ փոքր. «Եթէ առ Եղ-տուած իւր սուտ գտաւ, առ ո՞ որ 'ի մարդկանէ դա արդար գտանիցի»։ (Եղիշէ։)

Գ. Փոքրէն առ մեծը. (տխուր սպա-տահարի մը վրայ խօսելով.) Մենք որ ը-սելով այսչափ ցաւեցանք, հապա ո՞րչափ դուք՝ որ ականատես եղաք։

22—. Նմանութիւնը նոյն ինքն բաղ-դատութիւնն է, սա տարբերութեամբ որ՝ ինչպէս իր անունէն կ'իմացուի, այս ձեւը հակառակ իրերու համար չը գոր-ծածուիր։

23—. Հակադրութիւնք կամ հակառակք կ'ըսուին այն ձեւերը, երբ առարկայի մը վրայ խօսելով՝ նախ կ'ըսենք անոր հակառա-կը, այսինքն՝ ինչ որ չէ, և այսպէս անոնց իրօք ինչ ըլլալը աղէկ կը հասկցունենք։

24—. Դարձեալ Հակադրութիւն կ'ըս-ուի երբ փոխանակ իրի մը իսկութիւնը չզրուցելու՝ կը զուրցենք թէ ինչպէս պէտք էր ըլլալ. և կամ խօսքերն աւելի ազդու ընելու համար՝ ինչ բանի վրայ որ կ'ուզենք համոզել մէկը, անոր հակառակին յառութիւնը կը յայտնենք և վար կը զարնենք, ատով մեր ուզածը սիրելի կ'ը-

նենք. օրինակի համար, առաքինութեան սիրելի ըլլալը ցուցնելու համար՝ նախ մոլութեան տգեղութիւնը կը նկարագրենք։

## Օրինակք

«Որ ինքն իւր չար է, այլում՝ բարի ոչ կարէ լինել. և որ ինքն ընդ խաւար գնայ, այլում ոչ առաջնորդէ ճշմարտութեան լուսով։ Որպէս զի չէք յանիրաւութենէ արդարութիւն, այսպէս ՚ի ստութենէ ճշմարտութիւն»։ (Եղիշէ։)

«Չեկաց դահիճ՝ առընթեր՝ զկողս քերել առ ՚ի զոհս մատուցանելոյ ՚ի հարկէ. այլ հասեալ կայ ՚ի վերայ սատակիչ ցանկութիւն ընչից և ագահութիւն, և փորէ զաչս։ Ոչ ոք ՚ի զօրականաց արկ ընդ մեզ ՚ի խարոյկ և կացոյց ՚ի վերայ կասկարայից. այլ մարմնոյ բոցն բորբոքեալ առաւել քան զայս այրէ զոգիս»։ (Ոսկեբերան։)

# ԳԼՈՒԽ Բ.

## Ընդլայնումն փաստիւք

25—. *Երբոր յայտնելէն ետքը անոնց սուտ կամ իրաւ ըլլալն ալ պէտք է որ ապացուցանենք: Ապացուցանելը փաստով կ'ըլլայ, և փաստը դատողութեամբ կամ իմաստասիրութեամբ կ'ըլլայ: Ուստի այս միջոցով ընդլայնումն ալ՝ եղելութեամբ ընդլայնման մէկ մասն է. տեսնենք թէ ինչ է դատումն կամ իմաստասիրութիւնը:*

26—. *Իմաստասիրութիւն կամ դատումն կ'ըսուի մտաց այն կարողութիւնը, որով մէկ կամ աւելի դատումներէ ուրիշ դատում մը կը հանենք: Այս վերջինին կ'ըսուի եզրակացութիւն:*

*Դատողութիւնը կամ յայտնի իրի մը վրայ կ'ըլլայ և կամ հաւանական:*

*Արդս երկու միջոցով կը դատէ, մակածութեամբ կամ ընծայութեամբ* (Induction), *և նուազութեամբ կամ հետեւութեամբ* (Déduction):

## ՑՕԴՈՒԱԾ Ա.

### Մակածութիւն կամ Ընծայութիւն :

27—. Մակածութեան կ'ըսուի այն գաղափարը որ մասնաւոր առարկաներուն յատկութիւնը ընդհանուրին կը սեփականէ, անհատներէն կ'անցնի տեսակին և անկէ ալ սեռին : Ասիկա մասնաւորէն ընդհանուր եզրակացութիւն հանող դատումն է : Երբ ըսեմ. Մարդը կը ծնանի, կ'աճի և կը մեռնի. կենդանին կը ծնանի, կ'աճի և կը մեռնի : Ուրեմն ընդհանուր օրէնք մ'է, որ ծնունդ և աճումն ունեցողը մեռնի :

28—. Դարձեալ Մակածութեան կ'ըսուի այն թուումն մասանցը, զոր մասնաւոր առարկաներու վրայ ընելով՝ ոչ թէ ընդհանուր, այլ մասնաւոր դատողութիւն մը կը հանենք քիչ շատ հաւանական, ինչպէս .

Հերմէսը, աստղիկը, երկիրը, լուսինը, արէսը, արամազդը և այլն, իրենց լոյսը արեգակէն կ'առնեն. ուրեմն բոլոր մոլորակները իրենց լոյսը անկէ կ'առնեն :

Սոյն կ'ըսուի Սոկրատեան յետանորդ, որ նոր ծննդաբանութեան մը չկրնար երեւան հանել, այլ առջեւն գիտցուածը վերջի եզրին

վրայ կը հաստատէ, ան ալ հաւանականութեամբ ։

Բուն մակածութիւնը Ֆրանսուա Պագոն անգղիացիին գիւտն է, և անոր շնորհիւը եղած են ուսումնական անհամար գիւտեր ։

29—. Նմանութիւն կ'ըսուի ծանօթէն՝ անծանօթ ելնել ։ Աս ալ տեսակ մը անկատար մակածութիւն է. ասով ալ թէև շատ գիւտեր կրնան ըլլալ, բայց իր հիմը մակածութեան պէս հաստատ չէ, զոր օրինակ. երբ երկու մարդ տեսնենք մի և նոյն հասակով, քալուածքով, վարքով, դէմքով ալ քիչ մը նման, նմանութեամբ դատելով՝ կ'ըսենք որ երկուքն ալ մի և նոյն բնութիւնը և խառնուածը ունին. բայց ասիկա ոչ թէ ստուգութիւն մը՝ այլ հաւանականութիւն մ'է ։

30—. Օրինակ կ'ըսուի երբ նմանութեամբ դատելով հաւասարութիւն, կամ առաւելութիւն կամ հակադրութիւն կը հաստատենք իրի մը վրայ ։

1. Հաւասարութեան օրինակ. Մարիոս Հռոմը առնելով՝ Սիղղայի կուսակիցները սրէ անցուց. ուրեմն Սիղղայ ալ երբ

Նորէն Հռովմն առնէ, նոյնը պիտի ընէ Մա-րիոսին կուսակցաց։

2. Համադրութեան օրինակ. Քրիստոնէից խռովասիրութիւնը և անգթութիւնը յան-դիմանելու համար, հեթանոսաց հակա-ռակասիրութիւնն ու անգթութիւնը յա-ռաջ կը բերենք։

3. Ներածութեան օրինակ։ Պօսիւէ ժո-ղովուրդ մը կառավարելու դժուարու-թիւնը ցուցընելու համար օրինակ կ՚ու-տայ ամեհի ձի մը, որ սանձը կը կոտրէ կը փախչի՝ եթէ քիչ մը ուշադրութիւննիս ուրիշ տեղ դարձնենք և թոյլ բռնենք։

## Այլ Օրինակք

Ներածութեան. — «Զատեսանեմս և ըզ-մարմնոյ խոկ զայս. յորժամ հանապազ ընդ ծուխ գայցեն՝ արտօսր բերեն. և յորժամ 'ի խաղաղ օդս և 'ի մարգս և յաղ-բերս և. 'ի դրախտս զբօսնուցուն, առողջա-գոյնք և քաջատեսք. Նոյնպէս և մտացն ակն՝ եթէ յեղուրս հոգևոր բանիցն Ճարակիցի, սուրբ յստակ և քաջատես լի-նի. իսկ եթէ ընդ ծուխ ինչ աշխարհի ի-

բանցս գայցէ՝ բժաքեր արտասուրալից լինի » :

(Միքէլեան :)

Օրինակ. — «Որպէս զոչխար ՚ի սպանդ վարեցաւ, և իբրև զորոջ առաջի կտրչի իւրոյ անմռունչ, այնպէս ոչ բանայ զբերան իւր » : (Գործոց :)

31 —. Անձնական հնարք (Argument personnel) կ՚ըսուի այն ձեռնարկութիւնը, որով կը ցուցնենք թէ մարդ մը իր ըսածին հակառակը կ՚ընէ, զոր օրինակ .]

«Խոստանամ և ոչ կատարեմ, ասեմ և ոչ առնեմ, ամպեմ և ոչ անձրևեմ », և այլն :

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Հետեւութիւն կամ Նուազութիւն

32 —. Հետեւութիւնը մակածութեան հակառակն է. անիկա մասնաւորէն ընդհանուր կ՚ելնէ, իսկ այս՝ ընդհանուրէն մասնաւորը կ՚իջնէ : Հետեւութեամբ կը դատեմ, երբ ըսեմ.

Այն որ Աստուծմէ կը վախնայ, պէտք չէ որ ուրիշէ վախնայ.

Արդ ես Աստուծմէ կը վախնամ.

Ուրեմն ուրիշէ մը չեմ վախնար։

— Դարձեալ. Պարտինք մեր բարե-բարները սիրել.

Արդ որովհետեւ Աստուած մեր բա-րերարն է.

Ուրեմն պարտինք զանի սիրել։

33—. Ընդհանուրէն 'ի մասնաւոր իջ-նող հետեւութեան՝ տրամաբանութեան մէջ կ'ըսուի Հաւաքաբանութիւն.

34—. Ուրեմն Հաւաքաբանութիւնն է՝ երեք առաջարկութենէ բաղկացած նա-խադասութիւնը, որոնց վերջինը առջի եր-կուքին եզրակացութիւնն է։ Առջի երկու-երները կը կոչուին Նախընթացք, և վերջինը Եզրակացութիւն։

35—. Ուրիշ օրինակներէն կը տեսնուի, որ՝ Եզրակացութիւնը առջի նախընթացնե-րուն մէջ բովանդակուած է, որ նախա-դասութեան գաղափարաց կեդրոնն է։ Ասկէ կը հետեւի որ եզրակացութիւնը ճիշդ ըլլալու համար նախ պէտք է ուշա-դրութիւն ընել անոր Նախընթացներուն ճըշ-դութեանը։ Օրինակի համար.

Մարդ սպաննելը ոճիր է.

Արդ որովհետեւ մարդասպանը մարդ է.

Ուրեմն մարդասպան սպաննելը ոճիր է։

Հոս եզրակացութիւնը սխալ է. քանզի առաջինը եզրակացութեան մէջ ուրիշ նշանակութիւն ունի, իսկ նախընթացներուն մէջ ուրիշ. այծ մարդ սպաննելը ոճիր է, բայց երբ մէկը տեսնէ որ դիմացինը զինքը պիտի սպաննէ, բնական օրէնքը կը պահանջէ ինքզինք պաշտպանել, և 'ի պահանջել հարկին՝ սպաննել դիմացինը, որ զինքը պիտի սպաննէր։

36—. Հաւաքաբանութիւնը կրնայ նաեւ հիմնուիլ երկու հակառակ իրաց կամ պայմանաց վրայ, ինչպէս.

Եթէ սա մարդուն վստահիս՝ քեզ կը խաբէ.

Արդ՝ չես ուզեր խաբուիլ.

Ուրեմն անոր մի վստահիր։

Եւ կամ. Կամ երկիրը՝ արեւուն բոլորտիքը կը դառնայ, և կամ արեւը երկրին։

Արդ՝ խելքի դէմ բան է հաւատալ՝ որ արեւը իր մէկ միլիօն չորս հարիւր հազար անգամ երկրէս ունեցած մեծութեամբը անոր բոլորտիքը դառնայ.

Ուրեմն՝ երկիրը արեւուն բոլորտիքը կը դառնայ։

Ըստ այսմ, ինչպէս երկրաչափը իր կարկինովը՝ եթէ գրագէտն ալ տրամաբանական ձեռնարկութեամբ դատում ընէ, չոր ու ցամաք կ'ըլլայ ոճը. ուստի ճարտասանական ձեւի դարձնելով սա հետեւեալ օրինակը՝

Ան որ Աստուծմէ կը վախնայ, պէտք չէ ուրիշէն վախնալ.

Որդ ես Աստուծմէ կը վախնամ.

Ուրեմն անկէ զատ ուրիշէ մը չեմ վախնար, —կ'ըսենք.

Ան որ ալեաց կատաղութեան սանձ կը դնէ, կրնայ նաեւ չարերուն դաւաճանութիւնները խափանել. արդ իւր սուրբ կամացը հպատակելով, ես միայն անկէ կը վախնամ, սիրեցեալդ իմ Աբներ, և ուրիշէ վախ չունիմ։

(Առաջին ի Գոթողեա . ողբեր։)

Ուրիշէն փոխանակ ըսելու,

Երանի այն որ կենսաւոր է,

Իսկ կրակն չէ կենսաւոր,

Այս և չմեռանի.

այսպէս կ'ըսէ ճարտասանութեամբ.

«Երանի այն որ շնչէն և շարժի և գնայ և ուտէ և ըմպէ.

Ե՞րբ տեսեր դու զկրակ գնայուն կամ խօսուն կամ գիտուն.

Երդ զոր կենդանի քո չէ տեսեալ, մեռեալը խոստովանիս »:

37— Համաբարդութեան կ՚ըսուի շատ մը առաջարկութիւններէ բաղկացած հաւաքաբանութիւնը՝ որոնց փորձը և բացատրութիւնը իրենց հետն է.

Այս ձեւ դատումը գրական ընդլայնման առատ աղբիւր մ՚է, ինչպէս.

Պէտք է սիրել այն որ զմեզ կատարեալ կ՚ընէ.

Երդ դպրութիւնն զմեզ կատարեալ կ՚ընէ.

Ուրեմն պարտիմք սիրել դպրութիւնը։

Ասիկա պարզ հաւաքաբանութիւն մ՚ է, որ վերածելով համաբարդութեան՝ կ՚ըլլայ. Պէտք է սիրել այն՝ որ զմեզ կատարեալ կ՚ընէ. ասիկայ մեր սրտին մէջ քանդակուած ճշմարտութիւն մ՚ է, և անձնական սէրը՝ ուղիղ դատողութիւնը անսարանալի փորձեր կուտան ասոր: Երդ դպրութիւնք զմեզ կատարեալ կ՚ընեն. ո՞վ կրնայ ասոր վրայ երկբայիլ. անոնք կը ճոխացնեն միտքը, կ՚ամոքեն բարքը և մարդուն քա-

զաքավարութեան և զգաստութեան կերպարանք մը կուտան. Սուրբն պէտք է փրել Դպրութիւնը.

Բայց այս ցամաք ձեւը Ճարտասանականի վերածելով աւելի ախորժելի կ'ըլլայ. ինչպէս.

Արնա՞յ մարդ չսիրել դպրութիւնքը. անոնք են որ միտքը կը զարգացնեն, բարքը կը կրթեն, և մարդկութիւնը կը կատարելագործեն. անձնական օգուտը և ողջամիտ դատողութիւնը բաւական են մեզի սիրելի ընելու դպրութիւնքը, և անոնց մշակութեան հոգ տանել յորդորելու։

Համաճարտութիւն կ'ըսուի նաեւ այն շատ մը հաւաքականութեանց միութիւնը, որոնք շղթայակապ ըլլալով առաջին անդամին ստորոգելին երկրորդ անդամին մէջ կ'ընդլայնուի, և այսպէս մինչեւ եզրակացութիւնը, ինչպէս.

Փառասէրը անյագ է.

Այն որ անյագ է իր բաղձանաց մէջ՝ երբէք չյագենար.

Այն որ երբէք չյագենար, թշուառ է.

Ուրեմն փառասէրը թշուառ է։

Բոր մէջ երկու հաւաքականութիւնք

*կան իրարու հետ միացած ։*

*1—. Այն որ անյագ է իր բաղձա-
նաց մէջ՝ երբէք չյագենար.*

*Արդ փառասէրը անյագ է.*

*Ուրեմն փառասէրը չյագենար ։*

*2—. Այն որ բնաւ չյագենար, Թըշ-
ուառ է.*

*Արդ փառասէրը բնաւ չյագենար.*

*Ուրեմն փառասէրը Թշուառ է ։*

*Ուշադրութիւն ընելու է որ առա-
ջարկութիւնները իրարու աղէկ միացած
ըլլան, այս Թէ ոչ՝ զատ զատ առաջար-
կութիւններ եղած կ'ըլլան, հետեւու-
Թիւնն ալ սխալ, ինչպէս կ'ըսէր Գաղ-
ղիացի մը.*

*Եւրոպայ աշխարհիս ամենէն գեղեցիկ
մասն է.*

*Գաղղիա Եւրոպիոյ ամենէն գեղեցիկ
Թագաւորութիւնն է.*

*Փարիզ Գաղղիոյ ամենէն գեղեցիկ
քաղաքն է.*

*Իմ փողոցս Փարիզի ամենէն գեղեցիկ
փողոցն է.*

*Իմ տունս փողոցին ամենէն գեղեցիկ
տունն է.*

Իմ սենեակս տունիս ամենէն գեղե-ցիկն է.

Ուրեմն իմ սենեակս աշխարհիս ամե-նէն գեղեցիկն է: — Այս համաբարդու-թեան հեղինակը կրնար զրուցել նաեւ.

Ես իմ սենեկիս ամենէն գեղեցիկ մարդն եմ. ուրեմն ես աշխարհիս ամենէն գեղեցիկն եմ:

Ինչպէս կը տեսնուի, բոլորն ալ իրա-րու կապակցութիւն չունեցող զատ զատ առաջարկութիւններ են.

38—. Յարադրեալ կ'ըսուի այն ձեռնարկը, որուն մէկ առաջարկութիւնը կամ ան-դամը զօրութեամբ կ'իմացուի, ինչպէս.

Դուն անոր ինչ ըլլալը գիտես.

Ուրեմն պէտք չէ որ հարցնես:

Հոս առաջին անդամը որ է. Ես քե-նէ բան մը գիտեմ, պէտք չէ հարցնեմ, զօրու-թեամբ դրուած է:

39. Երկայրաբանութիւնը ձեռնարկու-թիւն մըն է, որ երկու հակառակ առա-կութիւններէ մի և նոյն եզրակացութիւ-նը կը հանէ. ինչպէս այս օրինակը.

Կամ յանցաւոր են քրիստոնեայնե-րը, և կամ արդար.

Եթէ յանցաւոր են, ինչու չես հարցաքններ. և եթէ արդար են, ինչու կը դատապարտես։

40—. Երկրպագութիւնը զօրաւոր ըլլալու համար պէտք է որ միջին կէտ չունենայ, այլ եզերքը իրօք հակառակ ըլլան, ապա թէ ոչ՝ արժէք չունենար, ինչպէս.

Ինծի առաջարկած ծառայդ կա՛մ ծեր է, կամ երիտասարդ. եթէ ծեր է՝ գործելու կարողութիւն չկրնար ունենալ. իսկ եթէ երիտասարդ՝ փորձառութիւն չունի. ուրեմն այս ծառայն իմ գործիս չգար.

Հոս երիտասարդութեան և ծերութեան մէջ միջին կէտ մը կայ, այն է կատարելութեան հասակը. և կրնայ ըլլալ որ առաջարկած մարդը այս հասակին մէջ՝ ըլլայ։

---

## ԳԼՈՒԽ Գ.

### Ընդդչայնումն ի կրից

41—. Կրից աղբիւրն է սիրտը. անկէ կը ծագին ամէն տեսակ բերկրական կամ տրտմախառն զգացումներ. ուստի ամե-

կա ընդարձակ միջոց մ՚է ընդլայնման. կիրքերն են ուրախութիւն, տրտմութիւն, զարմացումն, ցաւ, և այլն:

42—. Երբ ուզենք ուրիշին կիրքը շարժել, պէտք է որ մենք ալ նոյն կիրքով զգածեալ ըլլանք: Ահա այս է կիրքը շարժելու բոլոր կանոնը: Կ՚ուզե՞ս ունկնդրին բարկութիւնը շարժել, դէմքդ շարժումները ու խօսքերդ բարկութեան յարմարցուր. կ՚ուզե՞ս գթութիւնը շարժել, պէտք է դէմքդ աղաչաւոր մօր մը դէմքին նմանի՝ որ իր որդւոյն կեանքը կը խնդրէ:

43—. Այս նպատակին հասնելու համար դարձեալ երեւելի մատենագրաց դիմելու է: Աշխատութիւն ընելու է որ ինչպէս անոնք կրցեր են սիրտ շարժել, այսինքն մարդկային սիրտը քննելու նուրբ արուեստը ստանալ:

Ռասին Գաղղիացւոց մէջ, Եւրիպիդէս Յունաց մէջ անհամեմատ են այս մասին: Ռասինի գրուածոց մէջ Անդրոմաք, Փէրինիկէ, և Իփիգենիա ծայրէ ՚ի ծայր արտասուաց, տրտմութեան, բարկութեան, և վերջապէս մարդկային ամենէն նուրբ կրից նախատիպն են:

Պիւռոս կըսպառնայ Անդրոմաքին որ եթէ իրեն հետ ամուսնանալու խօսք չը տայ, անոր որդին՝ մանուկն Աստիանաքս կը մատնէ Յունաց, որ պատգամաւոր խրկեր կ'ուզէին զանի։

Պիւռոս. Օն, յանձնենք Յունաց զորդին Հեկտորի։

Անդրոմաք. (Անոր ոտքը իյնալով.) Ո՜հ, կեցիր, ո՜վ տէր, դադրեցուր այդ հուր.

Կը յանձնե՞ս զորդին, մայրն ալ անոնց տուր.
Դու չէի՞ր երբեմն որ ինձ խոստացար
Անսուտ երդմունքով լինել բարերար։
Ո՜վ Տէր, արդ գթայ՝ անարժա՞ն եմ ես,
Եւ անյոյս ներմանդ՝ զիս դատապարտե՞ս։

44 — . Ուրախութիւնն է հաճոյական և եռանդուն տպաւորութիւն մը, որ հոգւոյն կ'ազդէ իրական կամ այնպէս ենթադրուած աղէկութիւն մը ստացած ատեն։ Վասն որոյ ուրախութիւնը շարժելու համար ցուցնելու է՝ թէ ինչ բարիք կը ծագի այն բանէն որուն կ'ուզենք համոզել մէկը։

45 — . Ցաւն է բարոյական վիշտ մը զոր մարդ կ'ունենայ. ասիկա ուրախութեան հակառակն է։

46 — . Յուսահատութիւն. ինչպէս անուանէն կը հասկցուի, ամեն յուսոյ կորուստ ցաւոց վերջին աստիճան տպաւորութիւն

մ՚է այս, զոր կ՚ունենանք մեծ վտանգի մը կամ դժբաղդութեան մը մէջ :

Մասիյլեօն սոսկալի կերպով կը նկարագրէ հոգեվարքը մեղաւորի յուսահատութիւնը :

« Այն ատեն հոգեվարքը մեղաւորը անցելոյն մէջ միայն սրտաճմլիկ ցաւեր նկատելով՝ իր աչքին առջեւ ներկայացած բոլոր բաներուն մէջ տխուր պատկերներ, ապագային մէջ սոսկումն եւ արհաւիրք, չգիտնալով թէ որու դիմէ, ոչ արարածոց՝ որ իրմէ կ՚անհետանան, ոչ աշխարհին որ կ՚անցնի, ոչ մարդոց՝ որ չեն կըրնար զինքը մահուընէ ազատել, ոչ Աստուծոյ՝ որ իբրեւ իրեն ոխերիմ թշնամի կը նկատէ ուրկէ չկրնար ներումն սպասել, կը թաւալի իր արհաւրաց մէջ, կը տանջուի, կը խռովի զինքը բռնող մահուընէն՝ կամ լաւ եւս է ասել, ինքիրմէ փախչելու համար : Իր մահադուշակ աչուըներէն չեմ գիտեր ինչ սոսկալի եւ կատաղի հուր կը ցոլայ, որ իր հոգւոյն մոլեգնութիւնը կ՚արտայայտէ : Իր տրտմութեան խորէն հառաչանքներով եւ հեծութեամբք ընդմիջեալ խօսքեր կ՚արձակէ, որ հազիւ հազ

կը հասկցուին, և չես գիտեր որ յուսահա-
տութիւնը թէ զղջումն զանոնք կ'արտա-
ջերէ. խաչեալ Աստուծոյ մը վրայ ահագնա-
ցայտ նայուածքներ կը նետէ, և կը տարա-
կուսիս որ արդեօք երկիւղ՝ թէ յոյս, ատե-
լութիւն՝ թէ սէր կ'իմացնեն: Կ'ընկղմի իր
յուզմանց մէջ, և չգիտցուիր որ մարմի-
նը հոգիէն կը բաժնուի, թէ հոգին իր
դատաւորին մօտենալը կը տեսնէ. Հառա-
չանքներ կ'արձակէ, և չգիտցուիր՝ որ
իր մեղաց յիշատակը զանոնք կը հանէ, թէ
կեանքէն բաժնուելու յուսահատութիւ-
նը: Վերջապէս այս տխուր ջանքերուն մէջ
իր աչուըները կը պաղին, դէմքը կը փո-
խուի, կը տգեղնայ, իր դեղնած շրթուն-
քը ինքնիրեն կը բացուին, կը գոցուին,
բոլոր մարմինը կը սառուի. և այս վերջին
ձգամբ իր թշուառ հոգին կը բաժնուի
ցաւով այս հողէ մարմինէն, կ'իյնայ Աս-
տուծոյ ձեռքը. և ինքզինք անօգնական
միսակ կը գտնէ ահաւոր ատենին առջև»:

47—. Ահօ՛ն է անպատուութեան զ-
գացում մը որ մարդ կ'ունենայ, կամ արդէն
ընդունած և կամ ընդունելու անպատու-
թեան մը:

48—. Երկիւղ կամ սարսափն է այն ըզգացումը, որ մօտալուտ վտանգի մը երեւոյթը մեզի կ'ազդէ։

49—. Զարմացումն է՝ խորին հաճութիւն մը յափշտակութեամբ խառն, զոր կըզգանք շատ գեղեցիկ կամ վսեմ և վեհ բանի մը վրայ։

50—. Սէրն է այն զգացումը, որով սիրտը կը դիմէ իրեն հաճելի առարկայի մը։

Այս զգացումը բացատրելու մասին խիստ ճարտար է գաղղիացի Սէվիյնեէ տիկինը։ Իր գործքն է Հաւաքածոյք Նամակաց, զորս գրած է իր աղջկանը։ Աւասիկ թող յաճախ կարդան տղայք, և կամ դասատուները անոր մէկ կամ միւս Նամակին իմաստը աշակերտաց իբրև գրութեան նիւթ տան՝ յետոյ բնագրով ուղղեն։

51—. Փափագ, գթութիւն, անձնուիրութիւն, ատելութիւն, բարկութիւն, վրէժխնդրութիւն, և այլն, սրտին վրայ տիրող մէյ մէկ զօրաւոր կիրքեր են, որոնց վրայ բացատրութիւն տալ աւելորդ կը համարինք․ քանզի ամէն խօսելու նիւթ իր հետ կը բերէ իրեն սեպհական կերքը, և փոքրիկ ուշադրու ; իւն մը բաւա-

կա՛ն է զանոնք որոշելու ։ Իսկ զանոնք գըրգռելու արուեստին գալով՝ նորէն կը կըրկնե՛նք , միայն հմտութիւնը և երեւելի մատենից ընթերցումը կրնան այս պակասը լեցնել. ամէ՛ն տեսակ չոր ու ցամաք կանոն տեղի կուտայ վարժութեան և ընթերցմա՛ն առջեւ ։



# ԳԻՐՔ Բ.

## Յաղագս Տրամադրութեան, (Disposition):

---

## ԳԼՈՒԽ Ա.

### Ընդհանուր կանոնք որք ի կիր արկանելի են ամեն գրուածքի համար:

*52—. Գրուածքի ՛մը համար, վայելուչ, ազդու և հրապուրիչ գաղափարներ ունենալ բաւական չէ, այլ առաջին նըկատելու բանը՝ կարգը և անոր մասերուն պատշաճ կերպով իրարու յարմարցնելն է, ապա թէ ոչ՝ իր վախճանին չկրնար հասնիլ, և մատենագրութեան առաջին կանոն տուող անմահն Արիստոտէլի ծաղրական պատկերին կը նմանի։*

53—. Խօսքի մէջ պէտք է կարգ մը պահել և մտածքը իրարու լաւ յարմարցը-նել, ասոր կ'ըսուի Տրամաբանութիւն։

54—. Ուրեմն խօսելէ կամ գրելէ յառաջ՝ խօսելիք կամ գրելիք նիւթիդ յատակագիծը շինէ, գոնէ գլխաւոր մասանց։ Յատակագիծ չունենալէն է որ կ'ըսէ Պիւֆֆօն, շատ անգամ ամենէն երեւելի գրագէտը չգիտեր թէ ուսկից սկսի։

Նաեւ յատակագիծ չունենալէն է որ շատ ատենախօսներ կը հեռանան իրենց խօսելիք նիւթէն, կը պտըտին, կը դառնան, ճամբան կը կորսնցունեն, և վերջապէս « այս այսպէս » ըսելով՝ նորէն իրենց նիւթին կը դառնան, կը ձանձրացնեն իրենց ունկնդիրները, խօսքերնին ալ խառնաշփոթ կ'ըլլայ և յստակութիւն բնաւ չտեսնուիր անոնց մէջ։

55—. Համառօտ գրուածոց՝ այսինքն փոքրիկ նկարագրութեանց, դիպուածի մը պատմութեանը մէջ այնչափ զգուշութեամբ հարկ չէ դիտել այս կանոնը. քանզի հոն որչափ ալ քիչ վարժ ըլլայ խօսողը կամ գրողը, պայծառ կը տեսնէ իր ըսելիքը, և գիտէ թէ քանի մաս կը բովանդակէ։

Սակայն երկար գրուածոց համար շատ անգամ երկար խորհրդածութիւն ընելու է, որ գիտցուի թէ քանի գլխաւոր մաս կայ՝ որոնց վրայ պէտք՝է ճառել։

56. Շարագրութիւն մը ինչ ընդարձակութիւն կ'ունենայ՝ թող ունենայ, հարկ է որ հետեւեալ երեք պայմանները լաւ պահէ, որպէս զի լաւ տրամադրեալ սեպուի (Disposé). Այս պայմաններն են.

1. Միութիւն նիւթոյ.

2. Որոշումն եւ կապակցութիւն մասանց.

3. Համաչափաւորութիւն։

---

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Միութիւն նիւթոյ

57—. Գրուած մը կամ խօսուած մը պէտք է որ մի ըլլայ. այսինքն գլխաւոր նպատակը լաւ խորհուելէն ետքը՝ միւս մասերը պէտք է որ անոր բացատրութիւնը ըլլան, եւ ինչպէս մարմնոյ մը անդամները՝ անոր հետ յարմար՝ ըստ Պօալոյի։

«Ամէն բան իր տեղը դրուած ըլլայ․ սկիզբը և վերջը մէջինին համապատասխանելու են, և ճարտար արհեստով մը անոր զատ զատ կտորները դարձեալ իրարու քով բերես նէ՝ ամբողջին մասերը կազմելու են»։

58 — · Եթէ կ'ուզես շարադասութեան մը միութիւնը հասկնալ, զայն նորէն խոր առաջարկութեանը վերածէ․ Եթէ դարձեալ տողին դրած առաջարկութիւնդ երնէ և ուրիշ մը չը պարունակի մէջը, ըսել է որ միութիւնը պահուած է ։

Առնենք Սէնիկէրի Քրիստոսի վրայ խօսած ճառը, որ այսպէս կը բանայ․ «Ամենայն ինչ կատարեալ է» խօսքը, Կատարելեցաւ Աստուծոյ արդարութիւնը, Մարդոց չարութիւնը և Քրիստոսի սէրը։ Եթէ այս երեք մասերը իրարու քով բերես, նորէն «Ամենայն ինչ կատարեալ է» խօսքը կ'ունենաս։ Գէնելոն, դաղղիացի սրբազան ճարտարախօսութեան պարծանքը, այսպէս կը սահմանէ ճառը․ «Ճառն է ընդլայնուած առաջարկութիւն, և փոխադարձաբար՝ առաջարկութիւն է համառօտ ճառ»։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Որոշումն (Distinction), Կապակցութիւն մասանց, Անցումն:

59—. Նիւթոյ մը զանազան մասերը պէտք է որ իրարմէ որոշ և զատուած ըլլան, և մէկը միւսին մէջ չի բովանդակուի, բայց և այնպէս իրարու հետ կապակցութիւն ունենան որպէս զի ամէնքն ալ ամբողջի մը մասունքն ըլլան: Օրինակ առնենք Պուրտալոյ գաղղիացւոյն Ս. Լուդովիկոս Թագաւորին վրայ խօսած ներբողական ճառին յառաջակարգիծը: Բոլոր ճառին իմաստը սա է. Թագաւորութիւնն է որ միջոց եղաւ որ Լուդովիկոսի մեծ սուրբ մը ըլլալուն. և սրբութիւնն է որ անոր այնչափ պատուով Թագաւորելուն յենարան եղաւ: Ասկէց կը տեսնուի որ երկու բան կայ ապացուցանելու այս ճառին մէջ. Ճարտարախօսը զայն երկու մեծ մասերու բաժներ է. Ա. Սուրբն Լուդովիկոս մեծ սուրբ մը եղաւ. Բ. Մեծ Թագաւոր մը եղաւ:

Այս երկու մեծ բաժանումներն ալ ստորաբաժանումներ ունին, ինչպէս որ

պիտի տեսնուին Պուրտալուի շինած հե-տեւեալ յատակագծին մէջ:

«Սան Ա. Սուրբն Լուդովիկոս մեծ սուրբ եղաւ. վասն զի ՚ի ծնէ Թագաւոր ըլլալով՝ իր արժանապատուութիւնը իր սրբութեանը գործածեց. և յիրաւի զինք ըրաւ, Ա. աւելի ընդունելի խոնարհ առաջի Աստուծոյ. Բ. Գթած առ ընկերն աւելի փութով. Գ. անողոք առ իւր անձն՝ աւելի խստութեամբ և առաքինութեամբ:

Ա. խոնարհ առաջի Աստուծոյ. Թէ եւ Թագաւոր ծնած, այլ սակայն ինքզինք իրրեւ սոսկ հպատակ մը ծնած կարծեց՝ Աստուծմէ կախումն ունենալու և անոր հնազանդելու համար. և միշտ քրիստոնէի յատկութիւնը Թագաւորի յատկութենէն նախամեծար համարեց: Ասկէց յառաջ եկաւ այն զարմանալի նախանձախնդրութիւնը Աստուծոյ փառաց և անոր պաշտաման, նախանձն աւետարանի տարածման, նախանձն հաւատոյ միութեան և ամբողջութեան, նախանձն եկեղեցւոյ վայելչութեան, նախանձն բարուց վերանորոգութեան և մաքրութեան, նախանձն Աստուծոյ տան՝ որ զինք կը տոչորէր: Արդ՝

զինք ինքզինքնիս զոհել իւրաքանչիւր մեր կարգին մէջ.

Մատն Ի. Սուրբն Լուդովիկոս մեծ Թագաւոր եղաւ. վասն զի գիտցաւ իր սրբութեամբը իր արժանաւորութիւնը աւելցնել. մեծ եղաւ պատերազմի, խաղաղութեան յախորդութեան, յաջողութեան, և թագաւորութիւնը կառավարելու մէջ. օտարաց հետ վարուելուն մէջ. և ահա բոլոր ասոնք սրբութիւնն էր ընել տուող։

Ա. Մեծ՝ պատերազմի և խաղաղութեան մէջ. նա չէր սիրեր խաղաղութիւնը անգործութեան մէջ նստելու համար, և չէր սիրեր պատերազմը իր փառասիրութիւնը յագեցնելու համար. ո՛վ կ՚ըլլէր զայն այնչափ արի և պերճ ՚ի պատերազմունս. Աստուծոյ արդարութեան նախանձն էր։

Բ. Մեծ՝ յախորդութեան մէջ. օրինակ ընկալ իր բանտարկութիւնը, ուր միայն սրբութիւնը զինք լաւ պաշտպանեց։

Գ. Մեծ՝ յաջողութեան մէջ. Պաղղիա երբեք այնչափ ծաղկեալ և երջանիկ եղած չէր՝ ինչպէս այս օրով. քանզի Ս. Լուդովիկոս իր կրօնին մասն կը համարէր

էր հպատակաց բարօրութեան աշխատելը ։

Դ․ Մ՛եծ՝ էր գերութիւնը կառավարութեան մէջ․ բարեպաշտական նախանձով նա գիտցաւ ժողովուրդն իրեն հնազանդեցընել, և աճարկու ու սիրելի ըլլալ, և այլն․

Ե․ Մ՛եծ՝ օգուտը հետ վերուերուն մէջ․ Քրիստոնեայ աշխարհին մէջ սա էր պըսակեալ գլխոց իրաւարարն ու հաշտարարը․ ամէն կողմէն իրեն կը դիմէին, քանզի գիտէին անոր ողջմտութիւնը և անկաշառ իրաւասիրութիւնը »։

Ինչպէս կը տեսնուի, այս կանոնաւոր բաժանմունքը ընդարձակ ասպարէզ մը բացեր է Լուդովիկոսի գովեստ գրող Ճարտասանին առջեւ իր ճառը օգտակար կերպով ընդլայնելու․ և գրեթէ բոլոր յօգնութիւնը հոս լմնցած է․ քանզի ալ ասկէ ետքը ճառին ընթացքին կանոնաւորութեան և այլն, մտածմունքներ չունի, այլ միայն ըսածները ապացուցանելու այլ և այլ պատմութիւններով, օրինակներով և այլն ։

60․ Ընդհանուր կ'ըսուի այն խօսքը՝ որ ճառին մէկ մասը միւսին կը կապէ, և կամ այն դարձուածքը՝ որով մէկ առարկայէն

միւսին կ'անցնինք ։

Գուրտալու այսպէս անցումն կ'ընէ իր ճառին առաջին մասէն յերկրորդը, «Թէ սրբոյն Լուդովիկոսի արքայական շուքը նըպաստեց իր սրբութեանը . ատիկա իմացաք ։ Անկէ ետքը պիտի ցուցընեմ թէ ինչպէս փոխադարձաբար սրբութիւնը բարձրացուց անոր արքայական շուքը ։» ։

61—. Անցումները պէտք է որ բռնազբօսիկ չըլլան, այլ ճառին նիւթէն և ոչ թէ հեռուանց առնուած ։

62—. Անցումները նոյն նիւթին մասերը, և ոչ թէ երկու տարբեր նիւթեր իրարու կապելու համար կարեւոր են. ուստի նամակի մը համար, ուր զանազան նիւթերու վրայ կրնայ խօսուիլ, աւելորդ է անցումն գործածել ։

---

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Աստիճանաւորութիւն մտաց:

63—. Ճառի մը ամէն մասերը անանկ կերպով կարգադրուած ըլլալու են, որ երթալով աւելի արթընցնեն, գրգռեն,

յափշտակեն ըմԹերցողը կամ ունկնդիրը. այսինքն երԹալով իրենց ազդեցուԹիւնը աւելնալու է ։

Արքայն Լուդովիկոսի գովեստի ճառին մէջ այս աստիճանաւորուԹիւնք շատ աղէկ պահուած է. Նախ երկու մեծ մասերու բաժնուած է, յետոյ անոնք ալ ստորաբաժանմանց, և այսպէս երԹալով աւելի ազդու ապացոյցներով զարդարած է ճառը ։

64— Մասերու աստիճանաւորուԹիւնը մեծ օգուտ ունի ճառերու պարզուԹեան և դիւրիմացուԹեանը ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

### Ճարտասանական գրուածոց մասնաւոր կանոններ ։

65— Ճարտասանական գրուածք կ՚ըսուին այն ճառերը, որ յատենի 'ի լուր հասարակաց կամ դատաւորաց կը խօսուին, և կամ այս նպատակաւ 'կը գրուին ։

66— Որ և իցէ ճառ մը չորս մաս

ունի, այսինքն Յառաջաբանութիւն, Առա-
ջարկութիւն, Ցուցումն, և Վերջաբանութիւն։ Ասոնցմէ զատ կան երկու մասեր ալ որ սովորաբար ատենական ճառերու մէջ կը գործածուին, այն է՝ պատմութիւնն և Հերքումն։

67—. Հարկ չէ որ այս ամէն մասերը ամեն ճառի մէջ գտնուին. ճարտասանը ըստ բերման կրնայ անմիջապէս առաջարկութիւն ընել առանց յառաջաբանի, մանաւանդ երբ առաջարկեալ իրը հանրածանօթ է. ուստի ճարտասանին կ'իյնայ որոշել թէ քանի մասէ պիտի բաղկանայ իր գրուածը։

68—. Յառաջաբանութիւնն է ունկնդիրներուն միտքը և կամքը պատրաստել ճառը մտիկ ընելու։

69—. Չորս տեսակ յառաջաբանութիւն կայ. պարզ, փափուկ, պերճ և սաստիկ։ Ահա պերճ յառաջաբանին օրինակ մը ըլլայ Լուդովիկոս ԺԴ-ին դամբանականին յառաջաբանը։

«Միայն Աստուած է մեծ, եղբարք. մանաւանդ այս վերջին վայրկեաններուն՝ ուր նա աշխարհի Թագաւորաց մահը կը տնօրինէ, որչափ իրենց փառքը և իշխա-

նութիւնը աւելի փայլատակեր են, երբ կինան՝ այնչափ մեծ պատիւ կ'ընեն Յաւիտենականին գերագոյն մեծութեանը, նա մանաւանդ Աստուած բոլորովին կը յայտնուի ինչպէս որ է, և մարդս ոչ եւս է՛ ինչպէս որ կը կարծէր թէ է։

«Երանի այն իշխանին՝ որուն սիրտը փքացած չէ իր յաջողութեանց և փառաց մէջ, որ Սողոմոնին նման չսպասեր մինչեւ որ մահուան անկողնոյն մէջ սպառի իր մեծութիւնը որպէս զի գոչէ. Ունայնութիւն ունայնութեանց, և որ՝ Աստուծոյ ձեռաց տակ խոնարհեր է, նոյն իսկ այն վայրկենին ուր շողոքորթութիւնը զինքը մարդոց գեր 'ի վերոյն կը համարէր։

«Այո, եղբարք, այս աշխարհին՝ որուն վրայ արդ կ'ողբայք, փառքը և յաղթանակները աւելի յառաջ պէտք եղածին չափ հռչակուեցան. գովեստից չքեղութիւնը՝ գործոց չքեղութեան համապատասխան. ուրեմն ինչ կը մնայ մեզ ընելու հոս, եթէ ոչ խօսիլ անոր վրայ 'ի խորստ մեր ն։

(Մասիյօն։)

Կիկերոնի Կատիլինեանքը գերագանց օրինակ են ուժգին յառաջաբանութեան։

70—. Ճարտարախօսը յառաջաբանէն ետքը կ'իմացունէ խօսելիքը. ահա առոր կ'ըսուի առաջարկութիւն։

71—. Եթէ առաջարկութիւնը այն պիսի բան մ'է որ մէկէն ի մէկ զուրցուելով կրնայ ունկնդիրները խրատեցնել, պէտք է զարդարուածքներով և խորհրդածութիւններով առաջարկութիւնն ընել։

72—. Պարմանութիւնն է՝ նիւթոյն առաջարկութեան հանգամանաց նկարագիրը։

73—. Ցուցումն է ճառին այն մասը, յորում ճարտարախօսը փաստերով կ'ապացուցանէ իր ըսածները։

74—. Փաստերը կարգաւորելու պէտք է ըլլան՝ անանկ որ զօրաւորները սկիզբը, նուազ զօրաւորները մէջ տեղ՝ և վճռականները ամենէն վերջը. Բայց ինչպէս կ'ըսէ Ֆէնէլօն, ճարտարախօսը աղէկ պիտի դիտէ որ ամէն բան իր տեղը դրուի. շատ անգամ տկար փաստ մը զօրաւոր կ'ըլլայ՝ եթէ իր յարմար տեղը կենայ, և զօրաւոր մը տկար՝ եթէ իր բուն տեղէն վերցուի. շատ անգամ հարկ կ'ըլլայ որ ճշմարտութիւնը մինչեւ վերջը՝ ծածկուի. և յետոյ ապացոյցները զայն ինքնին յայտնեն։

Ցուցման մէջ երկու բանէ զգուշա-
նալու է, մէկ մը արդէն յայտնի իրերը
ապացուցանելէ, երկրորդ՝ փաստի մը վը-
րայ երկարաբանութիւն ընելէ, վասն զի
աստով խօսքին ուժը կ'իյնայ ։

75. — Հերքումն մասն է ցուցման. ո-
րովհետեւ հերքել ուրիշ բան չէ, բայց ե-
թէ զօրաւոր փաստերով, ապացոյցներով
հակառակորդին փաստերը ջրել, և կամ
ճշմարտութեան խոչընդոտներուն յաղ-
թել ։

76. — Ճշմարտութեան խոչընդոտներն
են կրից առաջնորդութեամբ եղած յո-
ռի դատողութիւնները՝ որոնք կը խաբեն
շատ անգամ մտքերը. Ճարտար գրիչը և
բերանը շատ անգամ ստութիւնը ճշմար-
տութեան քողով մարդոց կ'ընծայեն. ու-
րեմն ջանանք իմանալ յոռի դատողութեան
աղբիւրները՝ թէ՛ մեր և թէ ուրիշին սխալ
դատումները իմանալու համար ։

77. — Յոռի դատողները կ'ըսուին ա-
նոնք՝ որ առջի գրքին մէջ տեսած տրամա-
բանութեան կանոնաց տակ չեն իյնար,
այլ անոնց հակառակն են և կ'ըսուին ի-
մաստակութիւնք ։

ապացուցանելու կարօտ իրավ մը ուրիշ մը ապացուցանել է, օրինակի համար. մէկը կ'ամբաստանէ այս ինչ մարդը՝ թէ գողութիւն ըրած, երբ ուրիշ մը փախանակ ապացուցով հերքելու՝ ըսէ որ այն մարդը չէ կրնար գող ըլլալ, իմաստակութիւն ըրած կ'ըլլայ. քանզի խնդիրը անոր վրայ է թէ մարդը գող է՞ թէ ոչ, ուրեմն ասիկա պատասխան չէ ամբաստանութեան. յամէ ըլլան սար կ'ըսուի ։ Ուրիշ օրինակ մը.

դատն պէտք չէ որ այսպիսի բարիք մը հասնի, ուրեմն չը պէտք հասնի, վասն զի պէտք չէ որ հասնի ։

Գ. Պատճառ կարծել ինչ որ իրօք չէ պատճառ. բոլոր նախապաշարմանց և սովամոր դատողութեանց աղբիւրն է այս իմաստակութիւնը, օրինակի համար. գիսաւոր աստեղ երեւնալը սովի, սրածութեան և այլ աղէտից պատճառ կը կարծէ ռամիկը ։ Այս դատողութեան ուղիղ ըլլալը հաստատելու համար հարկ է նախ ապացուցանել որ գիսաւորները մարդոց կամ երաց վրայ ազդեցութիւն ունին ։ Արդ քանի որ այս այսպէս չէ, ուրեմն սխալ է այս դատումը ։ Դարձեալ շատերը կ'ըսեն որ այս ինչ մարդը կամ բանը չարագուշակ (ու-

ընելու է՝ ուղիղ հաւաքաբանութեան պայ-մաններով ինչպէս առաջ ըսած ենք. Եթէ հեռաւորութիւնը սխալ ըլլայ, իմաստակու-թիւնը կը յայտնուի.

81. — Քերականական իմաստակու-թիւնները կը կայանան բառերու միու-թեան և երկդիմութեան մէջ, ինչպէս.

Առիւծը կը մռնչէ.

Արդ երկինքին մէջ աստեղատուն մը կայ՝ որ է առիւծ.

Ուրեմն այն աստեղատունը կը մռնչէ։

Հոս երկդիմի է առիւծ բառը, քանզի առջինին մէջ բուն առիւծը կը նշանակէ. իսկ երկրորդին մէջ նմանութիւն մը և ոչ թէ բուն կենդանին։

82. — Վերջաւորութիւնն է ճառին եզ-րակացութիւնը. Հոս ճարտարախօսը պէտք է ամփոփէ իր ըսածները, իր խօսքը զօրաւոր փաստերը և իր հանճարին բոլոր ճիգը թափէ՝ շարժելու, համոզելու եւ յաղթելու ունկնդիրները։ Հոս կը թարգմանենք Կոնտէ իշխանին վրայ Պօ-սիւէի խօսած ճառին վերջաբանը, որ վեր-ջաբաններուն հրաշալիքն է։

«Բարձուցէք աչուընիդ ամէն կողմէն։

ահաւասիկ ի՛նչպէս կրցան ընել շքեղութիւնը և բարեպաշտութիւնը՝ դիւցազին մը մարմինը պատուելու համար։ Տիտղոսները, վերատասուութիւնները, սին նշանակըք անոր՝ որ ալ չկայ. պատկերները՝ որ կարծես թէ կ'ողբան շիրմի մը բոլորտիքը. վաղանցուկ պատկերքը ցաւոց՝ զոր ժամանակը կ'առնէ կը տանի բոլոր մնացելոց հետ. սիւնք՝ որ կարծես թէ մինչեւ յերկինս կ'ուզեն ամբառնալ մեր ունայնութեան վկայութիւնը։ Վերջապէս բան մը չպակսիր այս պատիւներուն մէջ բաց 'ի անկէ՝ որուն համար կ'ընենք զանոնք։

"Լացէք ուրեմն մարդկային կենաց այս դոյզն մնացորդաց վրայ. լացէք այն տխուր անմահութեան վրայ, զոր մենք կը շնորհենք դիւցազանց. բայց յատուկ մօտիք մանաւանդ, ո՛վ դուք, որ այնչափ եռանդագին կը դիմէք փառաց ասպարէզը, ո՛վ պատերազմիկ և արիաջանց ոգիներ, ուրիշ ո՛վ աւելի արժանաւոր եղաւ ձեզի հրամայելու. բայց դարձեալ ուրիշ որու՞ն հրամանատարութիւնը աւելի պատուաւոր գտաք. ողբացէք ուրեմն այն մեծ զօրավարը և ըսէք հեծեծելով. ահաւասիկ

քեան առ հասարակ ինչ տեղ որ բռներ էք իր վատահութեանը մէջ, շրջապատեցէք այս շիրիմը, հեղէք արտասուս խառն ընդ պաղատանս. և այսպիսի մեծ իշխանի մը քով այնչափ դիւրամատոյց բարեկամութիւն և ընտանի կենակցութիւն գտնելնուդ վը-րայ զարմանալով պահեցէք այն դիւցազ-նին յիշատակը, որուն բարերարութիւնը քաջութեանը հաւասար էր. իցիւ թէ միշտ ձեզ սիրելի խօսակցութեան մը նիւթ ըլլայ անիկա. իցիւ թէ իւր առաքինու-թիւններէն օրինակ առնէք. և իւր մա-հը զոր կ՚ողբաք՝ ձեզի միանգամայն սփո-փանաց պատճառ ըլլայ:

«Իսկ ինծի համար, եթէ ներելի է, բոլոր ուրիշներէն ետքը գալ իմ վերջին պարտականութիւնս մատուցանել այս շիրմին, ո՛վ իշխան, արժանի առարկայ մեր գովեստից և ցաւոց՝ դուն յաւի-տեան պիտի ապրիս իմ յիշողութեանս մէջ. քու պատկերդ հոն պիտի նկարուի՝ ոչ թէ այն ահարկու դիմօք՝ որ յաղթութիւն կը խոստանայր, ոչ, չեմ ուզեր տեսնել ի քեզ ինչ որ մահը կը ջնջէ: Այս նը-կարին մէջ անմահական կերպով պիտի

երբեւիս . քեզ պիտի տեսնեմ հոն ինչպէս որ էիր այս վերջին օրը Աստուծոյ ձեռաց տակը, երբ իր փառքը սկսաւ երեւիլ քեզ ։ Հոն պիտի տեսնեմ քեզ աւելի յաղթական քան ի Ֆրիպուրկ և ի Ռօքրուա, և սքանչացած այս գեղեցիկ յաղթութեանը վրայ՝ փառք տալով պիտի ըսեմ ամենասիրելի աշակերտին Յովհաննու խօսքերը . «Աշխարհիս յաղթութիւնը, այսինքն այն որ բոլոր տիեզերքը մեր ոտքին տակը կը դնէ, մեր հաւատքն է »։

« Վայելէ՛, ո՛վ Իշխան, այս յաղթութիւնը, վայելէ՛ զայն յաւիտեան, այս զոհիդ անմահական առաքինութեամբը . ընդունէ վերջին նուէր ձայնի մը՝ որ քեզի ծանօթ եղաւ . բոլոր այս տեսակ ճառիցս վերջ պիտի տաս . փոխանակ այլոց մահը ողբալու, կ'ուզեմ այսուհետեւ ի- մինս սուրբ ընել սորվիլ քենէ . երանի թէ այս սպիտակ մազերս ազդարարութիւն ընեն ինծի այն հաշուոյն վրայ զոր պատրաստիմ հատուցանել Տեառն կենաց քարոզութեամբ սնուցանելիք հօտիս համար, և անոր միայն պահեմ մարելու մօտ ձայնի մը և առկայծեալ եռանդի մը մնացորդը »։ (Պօսիւէ)։

# ԳԻՐՔ Գ.

## Յաղագս Ոճոյ

**83.** — Ոճ կ'ըսուի մեր գաղափարները և զգացումները արտայայտելու կերպին։ Ընտիր ոճ ունենալուն կարևորութիւնը ցուցնելու համար՝ հոս կը դնենք մէկ քանի հռչակաւոր գրագիտաց կարծիքը։

«Արդէն միշտ ոչ այնչափ գաղափարները որչափ անոնց արտայայտելու ձևը տպաւորութիւն կ'ընեն մեր վրայ. վասն զի ամէն մարդ աւելի կամ նուազ աստիճանով ունի այն գաղափարը որ մարդկային միտքին տակ կրնայ իյնալ. միայն ոճն է որ տարբերութիւն կը դնէ այս կամ այն մարդուն գաղափարաց բարութեանը կամ յոռութեանը մէջ։ Ոճը

կ՚ազնուացնէ խիստ հասարակ գաղափար-
ները, կը զօրացնէ անզօրները, կը բարձ-
րացնէ պարզ ու ստորինները. առանց ո-
ճոյ անհնարին է որ գրուած մը լաւ ըլլայ։

“Բարւոք գրելը, միանգամայն բար-
ւոք խորհիլ, բարւոք զգալ և բարւոք արտա-
յայտել է. ասիկա միանգամայն միտք
և ճաշակ ունենալ է. իմացական կարո-
ղութեանց վարժութիւնը և ամբողջու-
թիւնը կը ներկայացնէ. միայն աղէկ
գրուածները յապագայս պիտի մնան: Բա-
զում հմտութիւնք, հազուագիւտ իրո-
ղութիւնք, նորանոր գիւտեր չեն կրնար
գրուածքի մը անմահութեանը երաշխա-
ւորել՝ եթէ բացատրութեան ձևը ստո-
րին է. քանզի գեղեցիկ գաղափարները՝
կրնան յափշտակուիլ աւելի ճարտար ձեռ-
քերէ և ի գործ դրուիլ. միայն ոճին
յատկութիւնն է որ ուրիշ մարդ չի կրնար
իւրացուցանել. վասն զի ոճը նոյն ինքն
մարդն է”: (Պիւֆֆոն)

84. — Ոճը նոյն ինքն մարդն է. վասն զի
անիկա մարդուն զգացմանց և գաղափա-
րաց պատկերն է: Ուստի ամէն մարդ
ինչպէս զատ զատ բնաւորութիւն և ըն-

զգացման աստիճան ունի, անանկ ալ տարբեր ոճ ունի։ Ոճին տեսակը շատ է, բայց գլխաւորաբար՝ երկուքի կը բաժնենք. ընտիր ոճ և յոռի ոճ։

Ուստի այս մասին մէջ պիտի տեսնենք թէ որոնք են ոճին յատկութիւնները և պակասութիւնները. բայց ասոնք չի սկսած՝ հարկ է առաջ սորվիլ թէ ինչ կարգով բացատրելու է խօսքը որ շփոթ չըլլայ։

---

# ԳԼՈՒԽ Ա.

## Յաղագս Տարադասութեան

85. — Երբ գաղափար մը կը յղանանք, ասիկա միշտ բնական կարգով մը կը ներկայանայ մեր մտաց առջեւ։

Գաղափարին այս ծագումը, ինչպէս ըսինք՝, բոլորովին բնական և պարզ է. մարդ մի և նոյն կարգով և ուղղութեամբ կը յղանայ գաղափարը և զանի կ՚ըմբռնէ. միայն թէ բացատրելու ատենը կամ նուազ վարժութիւնն է որ զանանք իր նախկին վիճակովը կամ խանգարելով

88. — Երկու տեսակ առաջարկութիւն կայ, գլխաւոր և լրացուցիչ:

89. — Գլխաւոր առաջարկութիւնն այն է՝ որ գլխաւոր գաղափարը իր մէջ կը բովանդակէ. իսկ լրացուցիչն այն է՝ որ անոր հետ կը կապուի զայն բացատրելու համար։

Վերի խօսքը երկու առաջարկութիւն ունի, գլխաւոր և լրացուցիչ։ Գլխաւորն է. Զօրավարը սպաննեց զԶօրեմոս Սենեփին լերան վրայ. իսկ լրացուցիչն է, որպէս զի ինքը անոր տեղ Թագաւորէ։

Առաջարկութիւնները գլխաւորաբար չորս կերպով իրարու հետ կը կապուին։

Ա. Աստիճանաւորութեամբ.

Բ. Շաղկապով.

Գ. Հակադրութեամբ.

Դ. Ապացուցմամբ և բացատրութեամբ։

Ա. ին օրինակ. "Յարձակեցաւ Յուդա, ի դիմի հարաւ, զբաղումս ի նոցանէ դիաթաւալ կացուցանէր և զմնացեալսն փախստական ի բանակին արկանէր"։

Ուրիշ օրինակ. "Պաշարեցին քաղաքը, առին, և բնակիչները սրէ անցուցին"։

Բ. ին օրինակ. "Եհարց ցնոսա Յովսէփ

և տալ թէ արդարեւ կենդանի՞ իցէ հայրն ձեր Յակոբ . և նոքա ասեն . Այո՛ . կենդանի է ծառայ քո հայր մեր »։

Գ. րդ օրինակ . «Անգործութիւնը մեծութեան բեռը անտանելի կ'ընէ , իսկ աշխատութիւնը զայն փոքրացնել կը գործէ »։

Դ. րդ օրինակ . «Շատ դիւրին է ինքը զինքը ուղղելը . առաքինութիւնը՝ մի և նոյն գործը յաճախ կրկնելէն յառաջ կու գայ . ուրեմն մեկը կրնայ իր յօժար առաքինութիւնները թողուլ և իրեն դիմել . ընել կամ չընել՝ և ոչ ուրիշ բան »։

90 . — Դիտողութիւն ։ Գրուած մը պարզ ըլլալու համար պէտք է որ գաղափարաց միութիւն ունենայ ։

---

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Յաղագս գլխաւոր եւ լրացուցիչ առաջարկութեանց

91 . — Լրացուցիչ առաջարկութիւնը գլխաւորին հետ կը միանայ անոր միտքը որոշելու կամ ամբողջացնելու համար կամ իբրեւ ուղղակի խնդիր՝ և կամ պա-

տահական խնդիր։ Սովորաբար բնական կարգով նախ պէտք է գլխաւոր առաջարկութիւնը դնել և ապա լրացուցիչը յաւելուլ, ինչպէս. «Աստուած արար զերկինս և զերկիր և զամենայն որ ի նոսա»։

Բայց երբեմն այս կարգը կը յեղաշրջի խօսքին ազդուութիւն և վայելչութիւն տալու համար, ինչպէս. Երբ կ'ուզէ զինուորները զօրացընել՝ զայն կրթէ. փոխանակ ըսելու՝ Կրթէ զինուորները եթէ կ'ուզես զայն զօրացընել։

Քանի մը դիտողութիւններ

Ա. Երբեմն գլխաւոր առաջարկութիւնը կը զեղչուի, ինչպէս. Թող գայ տեսնեմ. այսինքն կ'ուզեմ որ գայ և տեսնեմ։

Բ. Խօսքի մը մէջ իւրաքանչիւր գլխաւոր առաջարկութիւն կրնայ լրացուցիչ մ'ունենալ։

Գ. Երբեմն գլխաւոր առաջարկութիւնը երկու լրացուցիչներու մէջ տեղը կը դրուի, ինչպէս. չարը երջանիկ ըլլալու համար պէտք է մոռնայ թէ Աստուած մը կայ։

Դ. Երբեմն լրացուցիչ առաջարկութիւն մը կրնայ ուրիշով մը լրանալ, ինչ-

պէս. անհնարկէլին որսակցացն փողօփնել նոցա։

Ե. Մէկ գլխաւոր առաջարկութիւն
մը կրնայ շատ լրացուցիչներ ունենալ, ինչ-
պէս։ Կը հաւատամ որ հոգին անմահ է, որ Ա-
տուած պիտի վարձատրէ բարիները և պիտի պատժէ
չարերը։

92. — Գիտնալ պէտք է որ եթէ շատ
լրացուցիչ առաջարկութիւններ եսեւէ
'եսեւ դրուին՝ խօսքը անիմանալի կ'ըլլեն.
այսպէս են այն տեսակ գրաբար և աշ-
խարհաբար գրուածները որ անցեալ դարու,
բայներով, որոշիչ ածականներով լի են,
որոնց մէջ դժուար է հասկընալ թէ որ
դիմաւոր բային կամ գլխաւոր խօսքին կը
վերաբերին։ Այս սխալման մէջ չիյնալու
համար պէտք է պարբերութիւնը շատ եր-
կայն չընել։ Այս դիտողութիւնը ամէն
գրուածքի համար չէ, վասն զի վսեմ բա-
ուածները շատ անգամ երկայն պարբե-
րութիւններէ կը բաղկանան։ Հեղինակին
կ'իյնայ որոշել իւր նիւթը և ըստ այնմ
պարբերութիւններու բաժնել։

93. — Դիտողութիւն. — Լրացուցիչ ա-
ռաջարկութիւնները Թէ, զի, որ, ուրեմն և
այլն, բառերէն մէկովը կըսկսին. այս բա-

*ները պէտք է որ իրենց վերաբերեալ բառին անմիջապէս քովը դրուին, ինչպէս.* «Դու՝ որ ոչ դպրոցն ես, զայդ ո՞չ գիտես»:

**94.** — *Ներքեւնի սա կրնայ անմիջապէս քովը չէ դրուիլ՝ այլ նոյն անդամին վերջը դրուիլ. բայց պէտք չէ այնպէս դասաւորել՝ որ խօսքին շփոթութիւն տայ, ինչպէս.* «Ամենեցուն՝ որ 'ի ժողովրդեանն էին՝ աչք 'ի նա հայէին»: *Հոս բնաւ շփոթութիւն և մթութիւն չկայ: Բայց երբ ըսենք.* «որ ի ժողովրդեանն էին աչք ի նա հայէին ամենեցուն», *ան ատեն խօսքին բնական կարգը վեր ի վայր շրջած կըլլայ և բան մը չը հասկցուիր:*

**95.** — Դիտողութիւն. — *Խօսքին դասաւորութեան և քերականական կանոնաց դէմ է տարբեր բնութեամբ բառեր* նոյն շաղկապով *կապել, այսինքն՝* դիմաւոր բայ մը՝ անդէմ բայի, ածական մը՝ մակբայի, գոյական մը՝ նախադրութեան հետ, *և այլն:*

---

### ՅՕԴՈՒԱԾ Բ.

Յաղագս պարզերութեան

**96.** — Պարզերութիւնն *է՝ երկու կամ*

աւելի առաջարկութիւններէ բաղկացած խօսքը ։

97. — Ո՞րքան կ'ըսուի այն խօսքը որ թէպէտ իմաստ մ' ունի՝ բայց անկատար է, և իրմէ նախընթաց կամ հետեւորդ խօսքովը պիտի լրանայ, զոր օրինակ. « Մեծ է սէրըն Աստուծոյ՝ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. և այնպէս աներկիւղս առնէ զմարդիկ՝ իբրև զանմարմին զօրս հրեշտակաց. — որպէս անդստին ի սկզբանէ է տեսանել զքաջումս բազում անգամ ի բազում տեղիս. — մարդիկ որ սիրօղն Աստուծոյ՝ իբրև զինու վառեալք էին, ո՛չ ինչ խնայեցին զանգիտելով իբրև զանարի կամ ի մահ անձանց կամ յափշտակութիւն ընչից կամ ի խողխողումն սիրելեաց, ելանել ի հայրենի երկրէն և անկանել ի ստրկութիւն յօտարութեան. — առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանաց, բայց միայն միաբան կալ ընդ Աստուծոյ զի ի նմանէ միայն մի գերի եղցեն » ։

98. — Կանոնաւոր պարբերութիւնը չորս կամ առ առաւելն հինգ անդամէ կը բաղկանայ. եթէ աւելի ըլլայ՝ ար-

տատամսութեան դժուարութիւն կուտայ, և խօսքին գլխաւոր առաջարկութիւնը աղէկ մը միտք չը պահուիր ։

99. — Երկու տեսակ պարբերութիւն կայ, յետադաս կամ ամփոփական պարբերութիւն (բէրիօտիք), և կցորդ կամ ազատ պարբերութիւն (քումփէ)։

100. — Ամփոփական պարբերութիւնն այն է՝ որուն առաջարկութիւնները շաղկապով միացած են կամ մակբայով մը կըսկսին, ինչպէս. «Թէպէտ եւ ոչ իցեմք բաւական առնել զամենայն չարիսն որ անցին անդէն ի կարաւանին ընդ գունդն Հայոց, սակայն և ոչ լռել կամիմք ծածկելով զվշտա նեղութեանն ։ Այլ ասասցուք փոքր ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ որք դառնապէս զմեզ ողբային ։ Ո՜ի եւ դու իբրեւ լուիցես, ոչ սակաւ արտասուս հեղուցուս ի վերայ ազգին թշուառութեան » ։ (Եղիշէ ։)

101. — Կցորդ պարբերութիւնը այն է՝ որուն մէջ շաղկապ մակբայ չը կայ, կամ խիստ քիչ ։

Ինչպէս. « Մօտեցաւ վսեմ ու ահաւոր վայրկեանը, արեւը իւր վերջին ճա-

ռագայթները այս լերանց գագաթներէն ժողվելով՝ նոր ասպարէզ մը կը բանայ ազատութեան », և այլն ։

Այս օրինակը կրնանք ձեւաւոր պարբերութեան վերածել այսպէս ։ Մօտեցաւ վսեմ ու ահաւոր վայրկեանը, ահա արեւը վերջին ճառագայթները կ'ամփոփէ այս լերանց գագաթներէն՝ և նոր ասպարէզ մը կը բանայ ազատութեան ։

102. — Ձեւաւոր պարբերութիւնը՝ ծանր, վեհ և խորին իմաստներ պարունակող ոճի աղէկ կը յարմարի ։ Իսկ կտրուկը՝ աւելի թեթեւ եռանդուն և փայլուն իմաստներ բացատրելու յարմար է ։ Կատարեալ գրուածի մը մէջ պէտք է երկուքն ալ ըլլան՝ որպէս զի ոճին պէսպիսութիւն և վայելչութիւն տան ։ Կտրուկ ոճը մանաւանդ պատմական բովանդակութեան աղէկ կը յարմարի ։

103. — Ինչ որ ըսինք առաջարկութիւններուն կազմութեանը համար՝ նոյնը կ'ըսենք նաեւ պարբերութեան համար ։ Այսինքն՝ պէտք է որ անդամները անանկ կերպով կարգադրուին՝ որ մթութիւն և երկդիմութիւն չը տան խօսքին ։ Խօսքը ուրիշին

բան մը հասկցնելու նպատակաւ կ՚ըլլայ, ուստի վերջին աստիճան խորշելու է խրթնութենէ և մթութենէ պատճառող ասացուածներէ և բառերէ։ Հոս այս տեսակ գրուածի օրինակ մը դնենք, որ կարծեմ թէ՝ Նզոնց Ճարտասանութեան մէջ կարդացեր եմ.

«Յողալն ՚ի ճախր յայեր ամբուռ
Խոշիւն դուդել ի յամբ անկուռ.
Սաղաղի արեկ թնդմամբ տըրոփ.
Օեւ տիր ըռումբ աղդու ՚ի յոփ»։

Ասկէ բնաւ բան մը չը հասկցուիր և կ՚երեւայ որ հեղինակն ալ ան նպատակաւ գրած ըլլայ։

104. — Պարզերութիւնը կանոնաւոր և դիւրիմաց ըլլալու համար պէտք է նախ գրածին բովանդակութիւնը լաւ ըմբռնել։ Պէտք է հեղինակը լաւ որոշէ գլխաւոր իմաստը. այնուհետեւ երկրորդականները իրարու ինքնին կը յաջորդեն։

Երկրորդական և գաղափարներու վրայ շատ կենալու չէ. քերականական կանոնաց զարտուղութիւններէ զգուշանալու է, ինչպէս. «Օի թէպէտեւ կարի շատ յառաջ մատուցեալ ծերացայց՝ սա-

կայն ելանելոց եմք ի մարմնոյ աստի՝ զի մտցուք առ Աստուած կենդանի , ուստի ոչ եւս ելանիցեմք ի նմանէ ": (Եղիշէ :) Հոս ՚ի նմանէ աւելորդ է :

Ուրիշ օրինակ . "Մանաւանդ զի անմոռաց է ինձ յիշելով զիմ և զոմանց ՚ի ձեռն ի ժամանակին ուր զանօրէն իշխանն խաբեցաք պատրեցաք իբրեւ զմանուկ մի տղայ անպիտան , իբր թէ ի վերին երեսս զկամս ամբարշտութեան նորա կատարեցաք. այլ ի ծածուկ զխորհուրդս տէր ինքնին վկայէ մեզ ": Աստ մէջ բնաւ պարզութիւն և կանոնաւորութիւն չը կայ : Ի՞նչ և զոմանց ՚ի ձեռն որո՞ւ խնդիր են՝ և ի՞նչ խնդիր :

105 . — Ընդհանուր կանոնն : — Գրուածի մը գլխաւոր գաղափարները ստուգանով և իւրաքանչիւրին վրայ աւելցած երկրորդական առաջարկութիւններովը պէտք է իրարու հետ միանան՝ այնպէս որ խօսքը թէպէտ շատ անգամ է բաղկացած ըլլայ , բայց իր մէջ իմաստի միութիւն և կապակցութիւն ունենայ . ինչպէս . "Յորժամ զաներեւութեն և զնորին զմշտնջենաւոր զօրութենէ ծառիցէ ոք , քանզի մարմնաւոր լեալ է , պարտի զմի ոս յատակել , և զխորհուրդս

*սրբել, զլոյզս շարժմանց պարզել, զի յայն զոր առաջի եդ՝ հասանել կարասցէ. աեւ որ ընդ ճառագայթս արեգականն հայել կամիցի՝ պարտի զպղտորութիւն աչացն, զաղտն և զբիժն ի բաց պարզել. զի մի մթալիքն՝ որ զբբօքն շողայցեն՝ արգել հայելոյ ի յստակութիւն լուսոյն լիցին ”:*

(Նարեկ.)

*Այս գրուածիս մէջ վերջին աստիճան կանոնաւորութիւն և պարզութիւն կայ, կէտ մը իսկ աւելորդ գրուած չէ. այսպէս է ահա բոլոր Նարեկը, որ մեր նախնեաց գրականութեան պարծանքն է իր սքանչելի լեզուին համար:*

---

## ԳԼՈՒԽ Բ.

### Յաղագս Ձեւոց կամ Դարձուածոց

**106.** — *Խօսքը բացատրելու այլ և այլ կերպերուն՝ ձեւ կ'ըսուի:*

**107.** — *Երկու տեսակ ձեւ կայ. ձեւք բառից, ձեւք իմաստից: Ամենքնիս ալ առանց գիտնալու ձեւեր կը գործածենք, մինչեւ*

յետին ռամիկն անգամ․ ասիկա լեզուին մէկ յատկութիւնն է։ Երբ ատենի մը համար ըսեմ՝ այս պարոնը շատ Գիտնական է, այս յե— մը կ՚ըլլայ։

108. — Երեւելի հեղինակ մը կ՚ըսէ․ Գրեթէ ամէն օր շուկաները կամ ընտանեկան խօսակցութեանց մէջ այնչափ նորանոր ձեւեր կը հնարուին՝ որչափ չեն հնարուիր երեւելի գիտնական հաստատութեանց և ակադեմիաներուն մէջ »։

---

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Ձեւք բառից

109. — Բառից ձեւերն չորս են․ աւելադրութիւն․ զեղչում․ յօգնահոլովք․ նմանաձայնութիւն․ փոխաբերութիւն․ փոխանունութիւն և այլաբանութիւն, և այլն։

110. — Աւելադրութիւնն է բառ մը կրկնել՝ խօսքին ազդուութիւն կամ վայելչութիւն տալու համար․ « Եմ, եմ և ես մարդ մահկանացու »։ (Իմաս։)

111. — Զեղչումն է խօսքին մէկ մասը

ըսելէայն խմացընել, ինչպէս. «Բարկու-
թիւն ամենահօրն զիջաւ, զի 'ի մէնջ
հաշտութեան պատարագն». այսինքն՝ հա-
փոխցաւ ։

112. — Յոգնահոլովն է բառ մը այլ և
այլ հոլովով, կամ բայ մը այլ և այլ ժա-
մանակներով և եղանակներով կրկնել,
ինչպէս. «Այլ իմաստունք լոյսին և լոյն միշտ
կենդանի բանիւքն իւրեանց» ։

113. — Նմանաձայնութիւնն է իրարու նը-
ման բառեր կամ յանգեր դնել, ինչպէս.

«Ոսկի 'ի միջի իմ ծածանէր,
Բարձրիկ օդովքն ծիծաղէր» ։

Այս ձեւը զգուշութեամբ գործածելու
է, վասն զի յաճախ գործածութիւնը
գրուածը տղայական խաղալիկ կ'ընէ ։

114. — Փոխաբերութիւնն է անկատար
բաղդատութիւն մը. երբ ըսեմ՝ Ներոն գա-
զանութեանը անձն էր, աս խօսքը ըսել է՝ ինչ-
պէս որ գազան խստութեանը անձնովն էր բնաւորի, այն-
պէս ալ Ներոնը անձնէրն է ։ Ասկէ կը տես-
նուի որ բաղդատութեան նախընթաց մէկ
եզրը զօրութեամբ է, և միայն հետեւու-
թիւնը գրուած է ։

Նոյնպէս երբ ըսեմ. այս անձը էր բարեբա-

փութեամբը արբեցած է, այսինքն՝ ինչպէս որ մարդը գինիէն դատողութիւնը կը կորսնցնէ կ'արբենայ, այս մարդն ալ իր երջանկութեամբը դատողութիւնը կորուսած կամ արբած է։

**115.** Փոխառութիւնն է պատճառը դնել փոխանակ գործի, կամ գործը փոխանակ պատճառի, պարունակողը փոխանակ պարունակեալի, և այլն, ինչպէս.

« Այս անձը աղէկ գրիչ ունի », այսինքն գրուած։ Հոս պատճառը գործին տեղ դրուած է։

« Կատաղէ մոլութիւն » ըսելը՝ մոլութիւնը կատաղէ կ'ընէ ըսել է, և ոչ թէ ինքը կատաղէ է։ Գործը փոխանակ պատճառի։

« Ո՛վ խմբդ այրիացեալ Սիոն, սուգ ըրէ գեցեալ Երուսաղէմ ». այսինքն որդիք Սիոնի, բնակիչք Երուսաղէմի։ Պարունակողը փոխանակ պարունակելոյն։

Այսպէս կ'ըսուի նաև . [illegible] մարդ, այսինքն՝ չար . այս մարդը աղէկ գլուխ ունի, այսինքն՝ խելացի է։

**116.** — Այլաբանութիւնն է՝ շատ մը փոխաբերութիւններ իրարու հիւսուած. այսպէս է Սաղմոսի գեղեցիկ այլաբանութիւնը . « Այգի մը Եգիպտոսէ փոխեցեր,

հաներ զհեթանոսս և զնոսա տնկեցեր և առաջնորդեցեր նմա։ Հաստատեցեր զարմատս նորա և ելից զերկիր․ ծածկեաց զլերինս հովանի նորա, և բարունակ նորա զմայրս Աստուծոյ։ Ձգեաց զորթ իւր մինչեւ ի ծով, մինչեւ ի գետս են շառաւիղք նորա։ Ընդէ՞ր քակեցեր զցանկ նորա, կթեն զնա անցաւորք ճանապարհի։ Ապականեաց զնա խոզ անտառի, և երէվայրի արածեցաւ ի նմա։ Աստուած զօրութեանց, դարձ հայեաց յերկնից և տես․ այց արա այգւոյս այսմիկ, և դարմանս տար սմա՝ զոր տնկեաց աջ քո»։

117․ — Փոխաբերութիւնն է սեռը՝ տեսակի, տեսակը՝ սեռի, եզակին՝ յոգնակիի տեղ դնել, անունի մը տեղ ուրիշ անուն մը սեփականել և այլն, ինչպէս․ Մահկանացուք, այսինքն Մարդիկ․ սեռը՝ տեսակի տեղ։

«Մ՛ի լինիք իբրեւ զձի և զջորի», այսինքն՝ զանբանս․ տեսակը՝ սեռի տեղ։ «Ահա թշնամին կուգայ», այսինքն՝ Թշնամիք․ եզակին՝ յոգնակիի տեղ։

Սիկա Ներոն մ՚է, այսինքն՝ Բռնաւոր․

Որդին կորստեան, այսինքն՝ Յուդա․

այս երկուքին մէջ անունի մը տեղ ուրիշ անուն մը գրուած է։

118․ — Դիտելիք․ — Ա․ Պէտք չէ փոխաբերութիւնները առօրեայ կամ անարգ բաներէ առնել, ինչպէս․

« Ի լեռան Ոլըմպեայ բարձրադիտակն՝ ելթուք Հերմէս ձիուն սպիտակ »․ Հոս ելխանի բառը անարգ է։

Բ․ Պէտք չէ որ բռնազբօսիկ կամ հեռուէն առնուած ըլլան, և բաղդատութիւն կամ նմանութիւն չունենան իրարու հետ, ինչպէս․ « Նօրը դաշտին ներքևը կը հանէ »։

Գ․ Կան անանկ ձևեր որ ճարտասանութեան յարմար են, կան անանկներ ալ որ բանաստեղծութեան աւելի կը յարմարին․ ուստի ամէն տեսակ գրուածքի իրեն վայելուչ ձևը գործածելու է։ Նոյնպէս ճարտասանը պէտք չէ որ ըսէ․ « Իր դալարագեղ գարնան մէջ թառամեցաւ »․ փոխանակ ըսելու վաղամեռիկ եղաւ․ սակայն բանաստեղծը կրնայ ըսել։

Դ․ — Երբեմն պէտք է փոխաբերութիւնները ուղղել, չափաւորել կամ լա[illegible] է ըսել, այսպէս ըսելով և ուրիշ ասոնց

նման բացատրութեամբք ։

Ե. — Պէտք չէ անանկ փոխաբերու-թիւն մը ընել որ նմանութիւն կամ կա-պակցութիւն չունի փոխաբերելոյն հետ. ինչպէս, չըսուիր «Այս ճարտասանը հե-ղեղ մ՚ է որ կը բղխէ» այլ պիտի ըսուի՝ ամէն բան կը գրէ կրակի ։

Զ. — Օտար լեզուաց ձեւերը որոնք չեն վայլեր ընիկ լեզուին՝ գործածելու չէ, օրինակի համար. Գաղղիացիք կ՚ըսեն՝ Գրքի վերջնող կամ ինքզինքը յայտնել ուղղ մարդու մը համար Թէ՝ ականներ ծիրաններ կը ցուցընէ (մնեմթրէ լէտան). բայց մենք կ՚ըսենք. սխալ է Գրքի վերջնել ։ Վերջա-պէս որ և իցէ ձեւ պէտք է որ գաղափա-րաց կապակցութեանը օգնէ, կամ գոնէ զայն չը խանգարէ ։

Ինչու համար երբեմն Թագաւոր ըսե-լու տեղ կրնանք ըսել Թագաւներ Գրքի և երբեմն չենք կրնար ։ Օրինակի հա-մար, կրնանք ըսել Գաղղիոյ և Իտալիոյ Թա-գաւներ Գրքիները շատ անգամ կը խօսար-հին իրենց հպատակացը հետ տեսու-թիւն ընելու անձամբ. և չենք կրնար ը-սել՝ Գաղղիոյ և Իտալիոյ Թագաւներ Գրքինե-

ըլ այս միջոցին իրարու հետ թշնամացած են ։ Ասոր զի առջի օրինակին մէջ Թագաւորներ բառը միայն Թագաւորը կը նշանակէր . իսկ երկրորդին մէջ անոնց գործողութիւնն ալ պիտի նշանակէ . ուստի եթէ Թագաւորներ ըսենք՝ փոխաբերութիւնը բուն իրէն հետ խառնուած կ'ըլլայ՝ և խօսքին աղուորութիւն չը տար ։

119 . Փոխաբերեալ բառ մը իր նախկին նշանակութիւնը կը կորսնցընէ և նոր նըշանակութիւն մը կստանայ . ուստի ուշադրութիւն ընելու է որ նշանակութիւնը իրէն վերաբերեալ խօսքերուն յարմարի . և յիրաւի ինչ հարկ կայ ըսել Թագաւորներ գլուխները իրարու հետ թշնամացած են , քանի որ Թագաւորները հոս Թագաւոր բառին տեղը չը կրնար բանիլ , քանի որ փոխաբերութիւն ընելու հարկ չը կայ ։

Նոյնպէս հեղինակի մը համար կըրնամք ըսել . Ասիկա երեւելի գլուխ մըն է , կամ երեւելի փաղանգ մ' է . բայց չեմք կըրնար ըսել . Այս երեւելի գլուխը , կամ թէ այս երեւելի գլխոյն կեանքը շատ արկածներ ունի ։ Ասոր պատճառը սա է որ՝ գլուխը , փաղանգը , հեղինակին կենաց հետ

*յարաբերութիւն չունին, այլ անոր հե-ղինակութեանցը հետ։*

*Փոխաբերութիւնները շատ կ'օգնեն համառօտ և ազդու ընելու խօսքը, ինչպէս.* « Շատ անգամ ժողովրդեան մը ատելութիւնը իր հլութեանը և փաղաքշանաց տակը կը ծածկուի »։ *Առանց ձեւոյ երկար ճառ մը հազիւ թէ այս իմաստը կրնայ տալ։ Ձեւերու գործածութեան մէջ ուշադրութիւն ընելու է նիւթոյն և գրուածին ոճոյն, այսինքն՝* ուղարձակչին *իրեն համեմատ ձեւ գործածելու է, և* ծանր խորհրդածութեանց՝ *իրենց համեմատ։*

---

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Ձեւք իմաստից

120. — Իմաստից ձեւերը *որ և իցէ բան մը խորհելու և զգալու եղանակէն կախում ունին։ Ուստի կրնանք ըսել որ իմաստից ձեւերը նոյն ինքն զգացմանց տեսակներն են։ Այս ձեւերը խիստ շատ են։ Անոնք երկու մեծ կարգի կը բաժնուին.* — Ա. շփոթու ձեւ. Բ. խորհելու ձեւ։

121. — Զգալու ձեւ, որուն մէջ կը բովանդակին, հարցումն, տարակուսութիւն, բացադարձութիւն, աղերսանք, անէծք, բացագանչութիւն, դիմառնութիւն, երգիծանք, ըղձութիւն, քաղցրաբանութիւն (*լիթօթ*), չափազանցութիւն։

122. — Խորհելու ձեւին տակ կը բովանդակին՝ հաղորդակցութիւն, շնորհումն, նախա առարկութիւն, առարկութիւն, նախումն, զանց առնելը, ուղղութիւն, աստիճանաւորութիւն, ակնարկութիւն կամ յիշատակութիւն, հակադրութիւն, ըղձաբանութիւն։

223. — Հարցումն՝ ձեւ մ'է որ ճարտարախօսը կ'ընէ չէ թէ պատասխան ընդունելու, այլ ունկնդիրները արթնցնելու և իր խօսքին ազդուութիւն տալու համար, ինչպէս. «Ո՞վ ըսաւ արեւուն՝ ել և իշխէ տուընջեան, կամ լուսնին՝ ցոլացիր և իշխան եղիր գիշերոյ։ Ո՞վ գոյացուց այնչափ անթիւ աստղերը որո՛նք կը զարդարեն հաստատութիւնը, և այնչափ արեգակունքը՝ որոնց իւրաքանչիւրը աշխարհ մը կը լուսաւորէ։

«Ո՞վ է այն ամենակարող ճարտարապետը որ այս հրաշքները ի հանդէս բերաւ, ուր մարդկային բանին հպարտու-

թիւնը շլացած կը կորսուի և կ՚անհե-տանայ։ Ո՜վ, բաց ի տիեզերաց ամեն-իշխան Արարչէն կրնար ընել ասոնք։ Կա-րելի՞ է որ ասոնք ինքնագոյ կամ՝ դիպաց արգասիք ըլլան. և ամբարիշտն պիտի յու-սահատի՞ այնչափ՝ որ էին և գոյին պաշ-տօնը չէին տայ, այն էակին՝ որ ստեղծեր և գոյացուցեր է ամեն բան»։ (Մասիյօն։)

«Ո՞ինչ ծանր հրաման առաջ տանել, զամրս հատանել անցանել, թէ ընդ օդս թռչել, թէ ընդ բնութիւն համատարած ծովուն ցամաքաթեւս սլանալ. և ոչ եր-բեք. այլ այնպէս դիւրին է առաքինու-թիւն, մինչեւ այնպիսի գործոց մի ինչ կարօտանալ, այլ միայն ոգւոյն և գթոյ։ Ո՞ր գործի ունէին Առաքեալքն՝ որ զայն-պիսի ուղղութիւնս արարին. ո՞չ միաձորձք և բոկք շրջէին, և ամենեցուն յաղթե-ցին։ Ո՜նչ դժուարին ի հրամանաց ի-ցէ. մի՛, ասէ, առներ զոք թշնամի. մի՛ ատեար զոք. մի՛ չար զումեքէ խօսիր։ Նո-ցին հակառակք են դժուարինք, և ոչ սոքա»։ (Ոսկեբերան։)

124. — Տարակուսութիւնն է՝ ճար-տար կեղծիք մը՝ որով ճարտասանը իր

յորդւոց հանցեն ի վերայ քո․ ողբս առցեն ի վերայ քո և ողբասցեն, զիա՞րդ կորեար քակտեցար ի մէջ ծովու քաղաքդ հոյակապ, որ եղեր զօրացեալ ի մէջ ծովու դու և բնակիչք քո, որ զարհուրեցուցանէիր զամենայն բնակիչս քո։ — Ի ձայնէ բարբառոյ քո նաւավարք քո երկիւղիւ զարհուրեսցին։ . . Կոծ դառնութեան առցեն որդիք նոցա ի վերայ քո, ողբս առցեն և ողբասցեն։ Ո՞վ էր իբրեւ զՏիւրոս՝ որ լռեաց դադարեաց ի մէջ ծովու։ (Եզեկիէլ։)

130․ — Երգիծանքն է բառերուն հակառակ իմաստ տալ, ինչպէս․

«Ո՜վ մեծի զօրութեանդ, ՚ի ծայրն հասեր իմաստից, փրկեցեր զոգի քո զայդ ասելովդ․ փոխանակ ըսելու՝ տգէտ, խելագար, և այլն։

131․ — Անցումն է ճարտար դարձուած մը՝ որով ճարտարախօսը նիւթէ նիւթ կ'անցնի․ «Եւ արդ վասն զի ծանուցաւ փոքր ի շատէ որքան միանգամ յաստուածազգեստից տուաւ յաղագս երկնայնոյն կարգաւորութեան, բեր այսուհետեւ զընտանեգոյնն մեր դիցուք ա-

ռաջի առ ի քննութիւն »: (Շնորհ.)

132. — Բաղդրախօսութիւնն է այն ձեւը որով ճարտարախօսը կը քօղարկէ իր յանդիմանութիւնը, ինչպէս. « Յայդմ ոչ գովեմ զձեզ ». այսինքն ընթացքդ գովելի չէ:

(Առաքեալ:)

133. — Չափազանցութիւնն է խօսքին զօրութիւնը խիստ աւելցնել կամ նուազել: «Բազում անգամ է տեսանել զգազանըս վայրենիս, զարջ, զինձ, զգայլ, զառիւծ հանդարտացեալս դարմանելով և մարդասէրս, իսկ զքարկասիրտն և ոչ երբէք: Բազում անգամ և զծով տեսանեմք հանդարտեալ յալեաց և ցածուցեալ ի վայրենութենէ. իսկ զքարկացողն և ոչ բընաւ: Հանապազ ի գազանութեան կայ, միշտ ի վայրենութեան, յար ի տմարդութեան, համակ յալեկոծութեան »:

(Սարգիս Շնորհ.)

134. — Հաղորդակցութիւնը ձեւ մ'է որով ճարտասանը իր ունկնդիրներուն և նոյն իսկ հակառակորդներուն խորհուրդ կը հարցունէ, ինչպէս.

« Որդ աղէ ասա, ո՞ր է արժանահաւատալի, բանքն եթէ արդիւնքն. ո՛չ ա-

պաքէն արդիւնքն. զի բանքն չվճարեն ինչ ի հաւատոց սակս, բանիւ զՔրիստոսին կրել զանուն, և գործով զսատանայ-ին, զի լի և լի է այնպիսին անհաւատութեամբ »: (Սարգիս շնորհ.)

135.—Շնորհումն է հակառակորդին բան մը շնորհել՝ մինչդեռ անիկա իրաւունք չունի. այլ է իրեն աւելի նպաստաւոր փաստ հանել, ինչպէս.

« Իսկ արդ ասիցես. ոստքն փշրեցան, զի ես պատուաստեցայց: Բարւոք է. անհաւատութեամբն փշրեցան, և դու հաւատովք հաստատեցար. մի հպարտանար, այլ երկիր, զի եթէ Աստուած ի բուն ոստն ոչ խնայեաց, գուցէ երբէք և 'ի քեզ ոչ խնայեսցէ »: (Առաքեալ.)

136.—Կանխաւ տարակուսութիւնը այն ձեւն է՝ որով ճարտասանը ուրիշին առարկութիւնները մէջ կը բերէ և զանոնք կը հերքէ. ինչպէս Ակէքսերանը կը յանդիմանէ անողորմները:

« Սայլ բազում անգամ եստ, ասէ, եւ նա չուտիցէ հանապազ. և զորդիսն քո, յորժամ յաճախ խնդրեսցեն, մինչ 'ի բաց մերժեսցես. ո՜ անհնարին անամօ-

թուլթիւն ։ Զգիտիցես մի՞ հարկք որովայնին են, որ զամենայն ինչ վասն նորին հնարիցես ։ Այլ ի շատախօսութիւնս հատանիս . այսր անուան այսչափ դահեկանք ի վարձու կան և այսր անուան եւս աւելի ", և այլն ։

137. — Առաջարկութիւնն է հարցումներ ընել և ինքնին պատասխանել. — "Իսկ արդ չա՞ր արժան էր ասել Թագաւորին . քա՛ւ, ես ոչ ասեմ, այլ խրատ ի գործ արկեալ զայլս ուսուցանեմ " ։ (Ոսկեբ.)

138. — Սպասումն է խօսքը կախ ձգել, ունկնդիրները արթնցընելու համար .— "Կամիմ և նոր ինչ ասել, այլ մի ինչ կարի զարմանայցէք կամ խռովիցիք ։ Ազինչ իցէ ։ Պատարագն նոյն է, եթէ չար և դոյզն ոք մատուցանիցէ, և եթէ Պօղոս և Պետրոս գլխովին, սակայն նոյն է "։

(Ոսկեբ.)

139. — Լռութիւնն է՝ խօսքը լռել, կեղծելով որ ընել չուզեր՝ թէպէտև իրօք կ'ընէ, ինչպէս . "Որ մեղանչէ, օրինազանց է . իսկ որ զօրէնս լուծանէ, զի՞նչ անուն է նորա . ես պատկառիմ ասել, մանաւանդ թէ երկնչիմ, զի մի աղէկէզ բժշկութեամբ

քըս, վասն ի խոր հարմանս զդեղ բանիս՝ երբեւեցայց թշնամի »։ (Նար.)

140. — Այլաբերութիւն այն ձեւն է որով ճարտարախօսը իր առջի ըսածը կ'ուղղէ աւելի պատշաճ կերպով, ինչպէս.

«Այս է քո պանծալի աստուածաբանութիւնդ, մանաւանդ թէ յիմարութեանդ ցոյցք, զնիւթս զայս յաւէրժակից ասել արարչական զօրութեանն »։

(Նար.)

141. — Նախճառաւորութիւն է երթալով խօսքին զօրութիւնը աւելցնել կամ պակսեցնել, ինչպէս.

«Հռովմայեցի մը շղթայի զարնելը յանցանք է, զայն խարազանով ծեծելը ոճիր, մեռցնելը հայրասպանութիւն. Ուրեմն ինչ անուն կրնանք տալ զայն խաչողին »։

142. — Յեղաբերութիւն կամ ակնարկութիւնն է բառից բաղդատութեամբ կամ համեմատութեամբ իմաստ մը յառաջ բերել, ինչպէս.

«Թէպէտ դափնիներով պսակուած՝ տակայն վախցիր կայծակէն »։

Այս խօսքը կ'ակնարկէ նախապաշարում մը, որով հիները կը կարծէին թէ

դափնին չանթ կ'արգիլէ ։

143 .— Հակադրութիւն է՝ հակառակ իմաստներ դնելով խօսքը ազդու գործել ։—

«Որ ինքն իւր չար է, այլում բարի ոչ կարէ լինել. և որ ինքն ընդ խաւար գնայ, այլում ոչ առաջնորդէ ճշմարտութեան լուսով։ Որպէս զի չէք յանիրաւութենէ արդարութիւն, այսպէս ի ստութենէ ճշմարտութիւն »։ (Եղիշէ։)

Հակադրութիւնը յաճախ գործածուած և վայելուչ ձեւ մ'է, և սակայն եթէ միայն բառերու վրայ կայանայ՝ գըրուածը տղայական կ'ընէ ․

144 .— Ընդփոխանութիւն է՝ մէկ բառով բաւելիքը շատ բառերով բացատրել, ինչպէս Վօլթէր իր մէկ դամբանականին մէջ փոխանակ ըսելու Աստուած՝ կ'ըսէ. «Ան որ կը նստի ի քրովբէս. ուրկէ կը ծագին ամէն թագաւորութիւններ, գահոյք և իշխանութիւնք, որում միայն կը վայելէ փառք մեծութիւն, նա ինքն է որ իրեն փառք կը համարի թագաւորաց օրէնք տալ և ուզած ատեն անոնց սոսկալի և մեծ դասեր տալ »։

Ուրիշ մը.

«Որ ամենհի կոհակաց կատարութեան դնէ սանձ՝ և զդարանս չարին նա խորտակէ, իմն Այնէր »: (Ռասին:)

145. — Պերիֆրազ. — Երեւելի գրագէտ մը կ'ըսէ, Աստուած բառին իմաստը շատ կերպ չըջաբանութեամբ կրնանք յայտնել, այսինքն այնչափ՝ որչափ որ Աստուած բառը ստորոգելի ունի, այլ պէտք է ընտրութիւն ընել այս ստորոգելեաց մէջ:

Մեր վերի չըջաբանութիւնները փոխենք՝ և ըսենք.

«Այն որ ծովուն ալեաց կատարութեանը սանձ կը դնէ, նա [illegible] օրէնս [illegible] ». և այլն.

«Այն որ կը նայի ի քերովբէս՝ ուրկէ կը ծագին ամէն իշխանութիւնք, նա է որ չարեաց դարանները կը խորտակէ »:

Այս չըջաբանութիւնները անոգը և փուչ իսկ կ'ըլլան. Քանզի չըջաբանութիւնը իրեն համապատասխանած չէ, չըջաբանութեանց գաղափարները ուղղակի յարաբերութիւն չունին ներգործած առարկային հետ, ուստի՝

146. — Պէտք է ուշադրութիւն ընել, ոչ թէ փայլուն և իմաստալից չըջա-

քանութիւններ ընելու, այլ տալու եւ գը-րութեան նիւթին և շրջաբանութեանց ստորոգելիներուն պատշաճութեանը ։ Օ-րինակի համար . քանաստեղծութեան և արձակի մէջ, ճարտասանութեան դիւ-ցազնական և քնարական կամ եղերական քանաստեղծութեանց մէջ՝ մի և նոյն շրջա-բանութիւնները տեղի չունին ։

147.—Այս ձեւը ամենէն գեղեցիկ հրա-պուրիչ ձեւն է՝ եթէ միտ դրուի յիշեալ կանոններուն ։ Վերջապէս որ և իցէ ձեւ-պէտք է գործածել զգայութիւնները ամենայն ե-ռանդով և բնական գոյնով նկարագրե-լու՝ և ոչ թէ անյարմար զարդերով սա-ցուածքին իմաստը քողարկել և ընթերցո-ղին մարգարէական հոգի պահանջել, զոր օրինակ .

Հայր մը վաղամեռիկ դստեր համար պէտք է ըսէ . «Իմ դուստրս պիտի ողբար իմ մահս, և ես անոր մահը կ'ողբամ»։

Այլ եթէ քանաստեղծութիւն ընելու մը-տօք ըսենք . Իմ դուստրս պիտի ընէր իմ վերջին՝ ինչ որ ես հիմա անոր վերջին կ'ընեմ . բոլորովին տկար ձեւ մը կ'ըլլայ ։

խօսքը աւելի ազդու կը գործէ, ինչպէս. «Հիացեալ զարմանամ միտք և ոչ գիտեմ ուստի՞ պարտ և պատշաճ իցէ սանել սկիզբն ճառիս». (Նամբ։)

125. — Դիմադարձութիւնն է բացակայից և մինչեւ անգամ անզգայ, անշունչ իրաց խօսք ուղղել, ինչպէս. «Յորդանան լուեալ՝ փախստական դառնայր, վտակ առ վտակ պատգամաւոր լինէր. գետ մի զարհուրիր, քո արարիչն եմ ես, եկեալ մկրտւիմ և լուանամ զմեղս»։

126. — Աղերսանքն է՝ աղաչանաց եւ աղերսանաց ձեւով խօսուածքը, ինչպէս. «Աղաչեմ զամենեսեան և զոտս եղբարցդ-որբոց արտասուօք սիրոյն համբուրեմ, ներեցէք իմոյ անզգամութեանս, և ընկալարուք զիս իբրեւ գործակից և ծառայակից». (Նամբ։)

127. — Անէծքն է ուրիշին կամ իրեն չարիք մաղթել՝ սրտին ցաւէն, ինչպէս. «Կորիցէ օրն յորում ես ծնայ, և գիշերն յորում ասացին թէ ահա արու։ Խաւարեսցի գիշերն այն, և մի խնդրեսցէ զնա տէր 'ի վերուստ։ Մի՛ եկեսցէ ի վերայ նորա լոյս. ընկալցի զնա խաւար և ստ-

ուերք մահու. եկեսցէ ի վերայ նորա մէգ։ Նզովեալ լիցի օրն այն և գիշերն, և տարցի զնա խաւար. մի եղիցի յաւուրս տարւոյ, և մի թուեսցի յաւուրս ամսոց։ Այլ գիշերն այն եղիցի ի ցաւս, և մի եկեսցէ ի վերայ նորա ուրախութիւն և մի ցնծութիւն։ Խաւարեսցին աստեղք գիշերոյն այնորիկ. սպասեսցէ և ի լոյս մի եկեսցէ, և մի տեսցէ զարուսեակն ծագեալ»։ (Յոբ։)

128. — Բացագանչութիւնն է ցաւոց, տրտմութեան կամ ուրախութեան յայտարար ձայն։— «Ո՛վ համբոյր, նենգութեան նշան և առիթ մահու»։ (Շարա.)

«Ո՜հ, կարի է առասպելը և առասպելաց առասպել»։ (Խորէն.)

«Ո՛վ գիշեր չարագուշակ. ո՛վ սոսկալի գիշեր, երբ կայծակի արագութեամբ ամեն կողմն յանկարծ որոտաց այս ձայնը՝ «Թագուհին կը մեռնի, Թագուհին մեռա՜ւ»։ (Պօլ—է.)

129. — Դիմառնութիւնն է այն ձևը որով ճարտասանը կը խօսի բացակայ՝ մեռեալ և երևակայեալ իրաց հետ, ինչպէս.

«Այսպէս ասէ Տէր Տէր զՏիւրոս . . . . ամենայն իշխանք ազգաց ծովուց

յօդուոց հանցեն ի վերայ քո. ողբս առցեն ի վերայ քո և ասասցեն, զիա՞րդ կորեար քակտեցար ի մէջ ծովու քաղաքդ հոյակապ, որ եղեր զօրացեալ ի մէջ ծովու դու և բնակիչք քո, որ զարհուրեցուցանէիր զամենայն բնակիչս քո։—Ի ձայնէ բարբառոյ քո նաւավարք քո երկիւղիւ զարհուրեսցին։ . . Կոծ դառնութեան առցեն որդիք նոցա ի վերայ քո, ողբս առցեն և ողբասցեն։ Ո՞վ էր իբրեւ զՏիւրոս՝ որ լռեաց դադարեաց ի մէջ ծովու։ (Եզեկիէլ։)

130. — Երգիծանքն է բառերուն հակառակ իմաստ տալ, ինչպէս.

«Ով մեծի զօրութեանդ, ’ի ծայրն հասեր իմաստից, փրկեցեր զոգի քո զայդ ասելովդ. փոխանակ ըսելու՝ պզտիկ, մոլորեալ, և այլն։

131. — Անցումն է ճարտար դարձուած մը՝ որով ճարտարախօսը նիւթէ նիւթ կ՚անցնի. «Եւ արդ վասն զի ծանուցաւ փոքր ի շատէ որքան միանգամ յաստուածազգեստից տուեալ յաղագս երկնայնոյն կարգաւորութեան, բեր այսուհետեւ զընտանեգոյնն մեր դիցուք ա-

ռաջի առ ի քննութիւն » ։ (Շնորհ․)

132․ — Բաղդրախօսութիւնն է այն ձեւը որով ճարտարախօսը կը քօղարկէ իր յանդիմանութիւնը, ինչպէս․ « Յայդմ ոչ գովեմ զձեզ »․ այսինքն ընդհակառակ գովելի չէ ։

(Առաքեալ ։)

133․ — Զափազանցութիւնն է խօսքին զօրութիւնը խիստ աւելցնել կամ նուազել ։ « Բազում անգամ է տեսանել զգազանս վայրենիս, զարջ, զինձ, զգայլ, զառիւծ հանդարտացեալս դարմանելով և մարդասէրս, իսկ զբարկասիրտն և ոչ երբէք ։ Բազում անգամ և զծով տեսանեմք հանդարտեալ յալեաց և ցածուցեալ ի վայրենութենէ․ իսկ զբարկացողն և ոչ բնաւ ։ Հանապազ ի գազանութեան կայ, միշտ ի վայրենութեան, յար ի տմարդութեան, համակ յալեկոծութեան » ։

(Սարգիս Շնորհ ։)

134․ — Հաղորդակցութիւնը ձեւ մ՚է որով ճարտասանը իր ունկնդիրներուն և նոյն իսկ հակառակորդներուն խորհուրդ կը հարցունէ, ինչպէս․

« Արդ ասէ սա , ո՞ր է արժանահաւատալի, բանքն եթէ արդիւնքն․ ո՞չ ա-

պաքէն արդիւնքն. զի բանքն չվճարեն ինչ ի հաւատոց սակս, բանիւ զՔրիստոսին կրել զանուն, և գործով զսատանային, զի լի և լի է այնպիսին անհաւատութեամբ »։ (Սարգիս Շնորհ.)

**135.**—Շնորհումն է հակառակորդին բան մը շնորհել՝ մինչդեռ անիկա իրաւունք չունի. ասկէ իրեն աւելի նպաստաւոր փաստ հանել, ինչպէս.

« Իսկ արդ ասիցես. ոստքն փշրեցան, զի ես պատուաստեցայց։ Բարւոք է. անհաւատութեամբն փշրեցան, և դու հաւատովք հաստատեցար. մի հպարտանար, այլ երկիր, զի եթէ Աստուած ի բուն ոստն ոչ խնայեաց, գուցէ երբէք և ʼի քեզ ոչ խնայեսցէ »։ (Առաքեալն։)

**136.**—Կանխառարկութիւնը այն ձեւն է՝ որով ճարտասանը ուրիշին առաջարկութիւնները մէջ կը բերէ և զանոնք կը հերքէ. ինչպէս Ոսկեբերանը կը յանդիմանէ անողորմները։

« Այլ բազում անգամ ետու, ասէ, եւ նա չունիցի՞ հանապազ. և զորդիսն քո, յորժամ յաճախ խնդրեսցեն, մինչ ʼի բաց մերժեսցես. ո՞ անհնարին անամօ-

Թուլթիւն : Չգիտիցե՞ս ո՞ր հարկք որու-
վայնին են, որ զամենայն ինչ վասն Նորին
հնարիցես : Այլ ի շատախօսութիւնս հա-
տանիս . այսր անուան այսչափ դահեկանք
ի վարձու կան և այսր անուան եւս տա-
ւելի », և այլն :

137 . — Առաջարկութիւնն է հարցում-
ներ ընել և ինքնին պատասխանել .— « Իսկ
այդ չա՞ր արժան էր ասել Թագաւորին .
քա՛ւ , ես ոչ ասեմ , այլ խրատ ի գործ
արկեալ զայլս ուսուցանեմ » : (Նշէլէ :)

138 . — Կախումն է խօսքը կախ ձգել .
ունկնդիրները արթնցընելու համար .—
« Կամիմ և Նոր ինչ ասել , այլ մի ինչ կա-
րի զարմանայցէք կամ խռովիցիք : Տե-
զինչ իցէ : Պատարագն նոյն է , եթէ չափ
և դոյզն ոք մատուցանիցէ , և եթէ Պօղոս
և Պետրոս գլխովին , սակայն նոյն է »:
(Ոսկեբ :)

139 . — Լռութիւնն է՝ խօսքը լռել , կեղ-
ծելով որ ընել չուզեր՝ թէպէտև իրօք կ'ը-
նէ , ինչպէս . « Որ մեղանչէ , օրինազանցէ .
իսկ որ զօրէնս լուծանէ , զի՞նչ անուն է
նորա . ես պատկառիմ ասել , մանաւանդ
թէ երկնչիմ , զի մի աղեկէզ բժշկութեամբ

քըս, վասն ի խոր հարմանս զղեղ բանիս՝ երեւեցայց Թշնամի ». (Սամբ.)

140. — Ուղղութիւնն այն ձեւն է որով ճարտարախօսը իր առջի բանը կ'ուղղէ աւելի պատշաճ կերպով, ինչպէս.

« Այս է քո պանծալի սառուածաբանութիւնդ, մանաւանդ թէ յիմարութեանդ ցոյցք, զնիւթս զայս յաւէրժակից սանել արարչական զօրութեանն ». (Սամբ.)

141. — Աստիճանաւորութիւնն է երթալով խօսքին զօրութիւնը աւելցնել կամ պակսեցնել, ինչպէս.

« Հռոմայեցի մը շղթայի զարնելը յանցանք է, զայն խարազանով ծեծելը ոճիր, մեռցնելը հայրասպանութիւն. Իսկ զինք խաչը հանել ի՞նչ անուն կրնանք տալ զայն խաչողին ».

142. — Յեղափոխութիւն կամ ակնարկութիւնն է բառից բաղդատութեամբ կամ համեմատութեամբ իմաստ մը յառաջ բերել, ինչպէս.

« Թէպէտ դափնիներով պսակուած՝ սակայն մախցիր կայծակէն ».

Ես խօսքը կ'ակնարկէ նախապաշարում մը, որով հիները կը կարծէին թէ

դափնին շահիլ կ'արգիլէ ։

143 .— Հակադրութիւնն է՝ հակառակ իմաստներ դնելով խօսքը ազդու գործել։—

«Որ ինքն իւր չար է, այլում բարի ոչ կարէ լինել. և որ ինքն ընդ խաւար գնայ, այլում ոչ առաջնորդէ ճշմարտութեան լուսով։ Որպէս զի չէք յանիրաւութենէ արդարութիւն, այսպէս ի ստութենէ ճշմարտութիւն»։ (Եղիշէ։)

Հակադրութիւնը յաճախ գործածուած և վայելուչ ձև մ'է, և սակայն եթէ միայն բառերու վրայ կայանայ՝ գըրուածը տղայական կ'ընէ.

144 .— Ընդարձակութիւնն է՝ մէկ բառով ըսելիքը շատ բառերով բացատրել, ինչպէս Պօսիւէ իր մէկ դամբանականին մէջ փոխանակ ըսելու Աստուած՝ կ'ըսէ. «Ան որ կը նստի ի քրովբէս, ուրկէ կը ծագին ամէն թագաւորութիւններ, դահոյք և իշխանութիւնք, որում միայն կը վայելէ փառք մեծութիւն, նա ինքն է որ իրեն փառք կը համարի թագաւորաց օրէնք տալ և ուզած ատեն անոնց սոսկալի և մեծ դասեր տալ»։

Ուրիշ մը.

«Որ ամենէն կոհակաց կատաղութեան դնէ սանձ՝ և զդարանս չարին նա խորտակէ, իմս Ապնէր»: (Ռասին:)

145. — Պէսպէս. — Երեւելի գրագէտ մը կ'ըսէ, Լաֆոնթէն բառին իմաստը շատ կերպ շրջաբանութեամբ կրնանք յայտնել, այսինքն այնչափ՝ որչափ որ Լաֆոնթէն բառը ստորոգելի ունի, այլ պէտք է ընտրութիւն ընել այս ստորոգելեաց մէջ։

Արդ վերի շրջաբանութիւնները փոխենք՝ և ըսենք.

«Ան որ ծովուն ալեաց կատաղութեանը սանձ կը դնէ, նա Թագաւորաց օրէնք կուտայ». և այլն.

«Ան որ կը նայի ի քերովբէս՝ ուրկէ կը ծագին ամէն իշխանութիւնք, նա է որ չարեաց դաւաճանները կը խորտակէ»:

Այս շրջաբանութիւնները անզօր և սխալ իսկ կ'ըլլան. Քանզի շրջաբանութիւնը իրեն համապատասխանած չէ, շրջաբանութեանց գաղափարները ուղղակի յարաբերութիւն չունին ներգործած առարկային հետ, ուստի՝

146. — Պէտք է ուշադրութիւն ընել ոչ թէ փայլուն և իմաստալից շրջա-

քանութիւններ ընելու, այլ առաւել գրութեան նիւթին և շրջաբանութեանց ստորոգելիներուն պատշաճութեանը ։ Օրինակի համար . բանաստեղծութեան և արձակի մէջ, ճարտասանութեան դիւցազնական և քնարական կամ եղերական բանաստեղծութեանց մէջ՝ մի և նոյն շրջաբանութիւնները տեղի չունին ։

147.—Այս ձևը ամենէն գեղեցիկ հրապուրիչ ձևն է՝ եթէ միտ դրուի յիշեալ կանոններուն ։ Վերջապէս որ և իցէ ձևու պէտք է գործածել զգացումները ամենայն եռանդով և բնական գոյնով նկարագրելու՝ և ոչ թէ անյարմար զարդերով առացուածին իմաստը քողարկել և ընթերցողէն մարգարէական հոգի պահանջել, զոր օրինակ .

Հայր մը վաղամեռւիկ դստեր համար պէտք է ըսէ . «Իմ դուստրս պիտի ողբար իմ մահս , և ես անոր մահը կ'ողբամ» ։

Եթէ բանաստեղծութիւն ընելու մտօք ըսենք . Իմ դուստրս պիտի ընէր իմ շիրմիս՝ ինչ որ ես հիմա անոր շիրմին կ'ընեմ . բոլորովին տկար ձև մը կ'ըլլայ ։

## ԳԼՈՒԽ Գ.

### Յատկութիւնք, չափութիւնք, եւ յոռութիւնք ոճոյ

148. —Ոճին յատկութիւնները երկու են, հասարակ և յատուկ։

149. — Հասարակ յատկութիւնները անոնք են՝ որ ամէն տեսակ գրագիտական ընտիր շարադրութեանց մէջ տեղի ունին։

150. — Յատուկ կամ՝ մասնաւոր յատկութիւնները անոնք են՝ որ նիւթոյն համեմատ կը փոփոխին։

---

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Հասարակ յատկութիւնք եւ անոր հակառակ յոռութիւնք

151. —Ոճին հասարակ յատկութիւններն են, պարզութիւն, յստակութիւն, ճշդութիւն, բնականն, պերճութիւն, պէսպիսութիւն, պատշաճութիւն և ներդաշնակութիւն։

152. — Պարզութիւնն է՝ ոճէն և ներա-խանական բացատրութիւններ գործածելը. ուստի ամէն բանէ առաջ պէտք է որ գը-

րագէտ մը իր մայրենի կամ գործածած լեզուին հմուտ ըլլայ. բառերուն նշանակութիւնը ըստ քմաց փոխելու չէ, ինչպէս. չըսուիր. «Այն հանդեան ընդ վարսագեղ ծառոյն որ շուք մեծ ի պարտիզի անդ գործէր». քանզի շուք բառը հովանի եւ պերճութիւն միանգամայն կը նշանակէ։ Սակայն պարզութիւնն ալ իր չափաւորութիւնը ունի զոր մենք Ծոյլ պարզութիւն կ'անուանենք, ու ատի պարզութեան հետեւինք ըսելով՝ գրուածը Գծուծ անդուրր և Գեղջուկ ընելու չէ. անմահ սրբազան Ճարտարախօս մ'ըսած է, Գեղջէ՛ արտասանութեան ընդ պաղպաղանս. բառ գտանելի չէ հոս Գեղջէ բառը պաղատանաց հետ գործածուելուն համար։ Քանզի մեծ գեղեցկութեան մը քով պզտիկ տգեղութիւն մը չտեսնուիր. ասկէ զատ մեծ հանճարները կանոնաց խիստ կապերէն ազատ են, վասն զի անսահման է իրենց ստեղծումը և տաղանդին Թռիչք։

153. — Յստակութիւն. — Ոճը յստակ ըլլալու համար պէտք եղածէն ոչ աւելի և ոչ պակաս խօսելու է։ Մարդ կը խօսի իր միտքը ուրիշին հասկցունելու համար, Ինչպէս կրնայ հասկըցունել եթէ յստա-

կութեամբ չբացատրէ զայն ։

154. — Իմաստը կամ խօսքը յստակ և հասկնալի ըլլալու համար պէտք է առաջ լաւ մը խորհել գրելիք նիւթին վրայ և ապա գրել ։

Պէտք է աղէկ խորհրդածել միտքը, մէջը և վերջը, այսինքն՝ յառաջաբանը, առաջարկութիւնը և վերջաբանը մտօք շարադրելու է և ապա ի գիր անցունելու ։

155. — Մթութիւն. — Մթութիւնը կը ծագի գրելիք նիւթին վրայ հաստատուն խորհրդածութիւն չընելէն ։ Այսպէս կ'ըսկըսի հեղինակը ոչ իր բացատրութեան և ոչ իր իմաստին տէր ըլլալ, որով ունկնդրի կամ ընթերցողին բան մը չըհասկըցուներ ։

Պարզեալ բառերուն ճիշտ գործածութեանը ուշադրութիւն ընելու է յըստակութեան համար․ ընդհանրապէս հոմանիշ բառերը սխալ կը գործածուին ։ Հոմանիշ ըսելով պէտք չէ իմանանք երկու բառեր՝ որոնք ամենայն ճշդութեամբ մի և նոյն իմաստը ունին․ քանզի իրօք հոմանիշ չկայ լեզուի մը մէջ, եթէ իրօք հոմանիշ ըլլար, մէկ լեզուին մէջ երկու լեզու-

եղած կ'ըլլար ։

156 . — Համանիշ ըսելով պիտի հասկը-
նանք այնպիսի յաւելածոյ բառեր, ո-
րոնք արմատական բառի մը այլ և այլ յարա-
բերութիւնները՝ նուրբ իմաստները կը
բացատրեն, օրինակ . ծոյլ, յոյլ, ծեղծ . այս
երեք բառերը գործելու փափաք չունեցող կը
նշանակեն . գործելու փափաք չունենալ, ահա
արմատական իմաստը . բայց ըստ մեզ՝ ծոյլ
կըսուի ան՝ որ գործելու տրամադիր չէ,
յոյլ կըսուի ան՝ որ անհոգ է, ծեղծ կ'ըսուի
ան՝ որ շարժել անգամ չուզեր ։

157 . — Այսպէս՝ որ լեզուն շատ հո-
մանիշ ունի, այն լեզուն աւելի հարուստ
կ'ըսուի ։ Ոտանաւորի մէջ աւելի տեղի
կ'ունենայ մթութիւնը, քանզի հեղինա-
կը վանկերուն և յանգերուն միտ դնե-
լով անհոգ կ'ըլլայ լեզուին ։

158 . — Ճշգրութիւնն է այնչափ ուշա-
դիր ըլլալ իր նիւթին՝ որ անկէ դուրս
բնաւ բան չխօսուի ։ Ճշդութիւնը ամէն
տեսակ գրուածքի մէջ մի և նոյն չէ . օրի-
նակի համար, փիլիսոփային, պատմագրին
և բանաստեղծին ճշդութեանց պարտա-
ւորութիւնները նոյն չափովը չեն, սակայն

ամենուն ալ սկզբունքը մէկ է, այսինքն՝ ուղղակի իր նպատակին դիմել: Ճշդութիւնը երբեք չհակառակիր ոճոյն վայելչութեանը և ճոխութեանը:

159. — Ճշդութեան հակառակն է շաղակրատութիւնը: Շատախօսութենէ խորշելու համար անօգուտ հանգամանքներու վրայ շատ դեգերելու չէ, բացի ասկէ՝ մի և նոյն խօսքը շատ անգամ կրկնելու չէ:

160. Բնականն է իր իմաստները և զգացումները այնպէս արտայայտել՝ որ բռնազբօսիկ կամ ճոռոմական չըլլայ, այլ ինքնազարդ և դիւրիմաց:

161. — Անկարելի է որ գրուածք մը օգտակար և հաճոյական ըլլայ առանց բնականի. աւելի պէտք է իբրեւ մարդ գրել՝ քան թէ իբրեւ հեղինակ:

162. — Բնականին հակառակն է արուեստակութիւն, որով հեղինակ մը կը ջանայ շատ խորին կերպով մտածել, կամ ընտրելագոյն առացուածներ գործածել: Սոփկա ճամարտակի գործ է. ով որ գտնալու շատ ջանք կը ցուցընէ՝ ըսել է որ չունի. ընտիր իմաստները ինքնիրեն սրտէն և մտքէն կը բղխին, ուստի ջանալու է զգացումները արթուն

պահել և միտքը մշակել․ ահաւասիկ գաղտնիքը : Երբ մէկը այս չունի, պարապ տեղը կը ջանայ գիտուն ըլլալու․ աւելի աղէկ է միջակ բայց կանոնաւոր բան մը գրել՝ քան թէ բարձրանալու ջանալ և բոլորովին յատակը իջնել :

—Գրագէտ մը տիկնոջ մը նամակ գրելով այսպէս կ'ըսէ․ “Կարծեմ թէ դուք Նեղոսի ակունքը գիտէք, և այն ակունքը ուրկէ ձեր իմաստները կ'առնէք՝ աւելի ծածուկ և անծանօթ են ” :

163․ —Ազնուութիւնն է ստորին ձեւեր չգործածելը․ հասարակ, ստորին իմաստ մը բարձրացընել՝ ընտիր բացատրութեամբ և հրապուրիչ ձեւերով : Ինչպէս այս խօսքը․ Վիշտը յաւիտեան չի տեւեր․ Լաֆօնթէն այսպէս կը բացատրէ, տխրութիւնը կը թռչի ժամանակին թեւոյը վրայ :

164․ —Ազնիւ բացատրութեանց մէջ միտ դնելու է ժամանակին, սովորութեան, բարուց համեմատ ասացուածներ գործածելու․ կան այնպիսի ասացուածներ որ մէկ լեզուի մը մէջ ազնիւ փափուկ վսեմ են, բայց ուրիշի մը մէջ ծաղրական և ստորին :

165. — Պէսպիսութիւնն է գրուածի մէջ զգացմանց և իմաստից համեմատ ասացուածները փոխել, այսինքն՝ մեղմ, ախորժական, ուժգին կամ պերճ գրել. Երկար միակերպութիւնը կը ձանձրացընէ և գրուածին յարգը կը կորսնցունէ ։

166. — Պատշաճութիւն. — Պատշաճութիւնըն է նախ՝ մէկնիւթին համեմատ իմաստ գործածել, այսինքն պարզ՝ ուր պարզութիւն, և փափուկ՝ ուր որ փափկութիւն պէտք է ։ Բ. Նիւթին համեմատ զգացում յուզել ։ Գ. Իւրաքանչիւր իմաստին եւ զգացման սեփական բացատրութիւնները գործածել ։ Դ. Ամէն անձի բերանը իր վիճակին համեմատ լեզու դնել ։ Ծառայ մը և ազատ մը, երեւելի մը և աննշան մը՝ մի և նոյն կերպով չեն կրնար խօսիլ ։

167. — Ներդաշնակութիւն. — Ներդաշնակութիւնը բուն երկու տեսակ է, բառից և իմաստից ։ Բառից ներդաշնակութիւն է, վանկերը բառերը կամ ամբողջ պարբերութիւնները այնպէս բացատրել՝ որ իրարու վրայ թաւալելով ախորժալուր ըլլան ականջի ։

168. — Ներդաշնակութիւնը իմաս-

տից համար այն է՝ ինչ որ է երաժշտութիւնը խօսքին, այսինքն՝ ինչպէս երաժշտութիւնը կը կենդանացընէ մինչեւ անգամ սորին գրուածները, նոյնպէս ալ ներդաշնակութիւնը բառերուն նոր նշանակութիւն մը կուտայ և զանոնք կը փափկացընէ, ինչպէս. «Յարձակեցաւ Յուդա, ի դիմի հարաւ, զբազումս ՚ի նոցանէ դիաթաւալ կացուցանէր» և այլն։

Հոս կարծես թէ կը տեսնենք յորձանին ճողփելը և խորտակելը։

Ստուածաշունչ գրոց մէջ խիստ բաքանչելի կերպով պահուած են ներդաշնակութեան կանոնները։

---

# ՅՕԴՈՒԱԾ Բ.

## Ոճերուն տեսակները եւ իրենց տարբերութիւնը

169. — Ինչպէս ըսած ենք ամէն տեսակ գրուած իւր մասնաւոր յատկութիւններն ունի, օրինակի համար՝ վիճաբանականը այլ, բանաստեղծականը այլ, ծանր և բարձր նիւթերը այլ և այլ յատուկ ընթացքներ ունին։ Այս տարբերութեանց

նայելով գլխաւորապէս երեք տեսակ ոճ կայ պարզ, բարեխառն, և վեհ։

170. — Սակայն պէտք չէ իմանալ որ վսեմ ոճը իր մէջը չը բովանդակեր պարզին կամ բարեխառնին յատկութիւնները, նոյնպէս պարզ և բարեխառնը բոլորովին զուրկ են վսեմին բարձրութենէն. ընդհակառակն շատ անգամ ճարտար արհեստով մը իրարու հետ կը խառնուին։ Տեսնենք ուրեմն որոնք են այս ոճերը իրարմէ զանազանող մասնաւոր յատկութիւնները։

## 1. — Պարզ Ոճ

171. — Պարզ ոճն այն է՝ որ մասնաւորապէս տեղի ունի նկարագրութեանց, պատմութեանց, նամակներու, միով բանիւ բոլոր այն գրուածոց մէջ՝ որոնք բարձր կամ ուժգին ձեւերու պէտք չունին։ Պարզ ձեւին ընդհանուր յատկութիւններն են՝ բնականն և դիւրիմացութիւնը։

### Օրինակ

«Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր, և այնպէս աներկիւղս առնէ զմարդիկ իբրեւ զանմար-

մին զօրս հրեշտակաց. որպէս անդստին ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում անգամ ի բազում տեղիս. մարդիկ որ սի-րովն Աստուծոյ իբրեւ զինու վառեալք էին՝ ոչ ինչ խնայեցին զանգիտելով իբրեւ զա-նարգ, գոլով վառասիրութք՝ կամ ի մահ ան-ձանց կամ ի յափշտակութիւն ընչից կամ՝ ի խողխողումն սիրելեաց, ելանել ի հայրենի երկրէն և անկանել ի ստրկութիւն յօ-տարութեան. առ ոչինչ համարեցին զայս ամենայն անցս չարչարանաց, այլ միայն մի-աբան կալ ընդ Աստուծոյ: (Եղիշէ:)

172. — Պարզ ոճին մասնաւոր յատկու-թիւններն են պարզութիւն, դիւրիմացու-թիւն, համառօտութիւն և բնական շարք:

173. — Պարզն է՝ առանց արուեստի և զարդուց գրել. այս ձեւը ինչպէս ըսինք՝ խորին մտածութիւններ ալ կրնայ պարու-նակել, ինչպէս. «Անցանէ ուր պատճառաց էից գիտաց գոլ խելամուտ»:

«Ես զամենայն արհաւիրս և զանողորմ Ճակատագիր»

«Ես զանյագ տարտարոսի շռինդ և զշուքն առ ոտն եհար»:

(Վ. Յրգէլ. Աշխարհական:)

174. — Դիւրըմբռնելութիւնն է լաւ խորհել գրելիք նիւթին վրայ, և անոր կապակցութիւնները և անցումները այնպէս կանոնաւոր յօրինել, որ ընթերցողը կամ ունկընդիրը առանց երկար խորհրդածելու կարենայ գրուածին իմաստը ըմբռնել։

175. — Համառօտութիւնն է գրուածին պարբերութիւնները ամփոփ և համառօտ յօրինել. բայց զգուշանալու է համառօտ յօրինել ուզելով մթին և ցամաք չը գործել ոճը։ Մեծին Վարդանայ ատենախօսութիւնը օրինակ կրնայ ըլլալ ընտիր պարզ ոճի մը։

«Ի բազում պատերազմունս մտեալ է իմ և ձեր ընդ իս, է ուրեք զի քաջապէս յաղթեցաք թշնամւոյն, և է ուրեք զի նոքա մեզ յաղթեցին, և բազում այն՝ է զի յաղթող գտեալ եմք և ոչ յաղթեալք» և այլն։

Ցամաք ոճն այն է, յորում հեղինակը պարզ գրել ուզելով՝ կը թօթափէ բնական զարդերն անգամ և գրուածը տաղտկալի կ'ընէ։ Ասիկա ճոռոմաբանութեան և ճամարտակութեան միւս ծայրն է։

176. — Բնական ոճը կը կոչուին այն

ձեւերը՝ որոնք բնական բերմամբ կը գըտ-
նուին գրուածոց մէջ՝ առանց հեղինակին ընտրութեանը և խորհրդածութեանը ։ Ընդհանրապէս զուարճալի պատմական և կատակերգական գրուածոց մէջ գտնուած խեղճի խօսքերը բնական զարդեր են ։

## 2. — Բարեխառն Ոճ

177. — Բարեխառն ոճը այն է՝ որ պարզին և վսեմին միջին տեղը կը բռնէ . ասիկա ամէ՛ն տեսակ զարդ կրնայ ունենալ՝ պարզ ոճին ընթացքէն շատ չը խոտորելով ։ Բարեխառն ոճին մասնաւոր յատկութիւններն են , վայելչութիւն , ճոխութիւն , նրբութիւն , և փափկութիւն ։

178. — Վայելչութիւնն է կոկիկ և զարդարուն լեզուով ընտիր և գեղեցիկ իմաստներ բացատրել, այնպէս որ ականջին սրտին մտաց միանգամայն հաճելի ըլլայ ։ Մայր-Արաքսի երգը սքանչելի օրինակ մ'է ասոր ։

Մայր Արաքսի ափերով
Քայլամոլոր գընում եմ,
Հին հին դարուց յիշատակ
Ալեաց մէջը պտրում եմ ։
Բայց նոքա միշտ յեղեղուկ

պղտոր ջրով եզերքին՝
դարիւ դարիւ խփելով
փախչում էին լալագին ։

Արաքս ինչո՞ւ ձկանց հետ
խաղ չես բանում մանկական.
դու դեռ ծովը չը հասած՝
սգաւոր ես ինձ նման ։

Ինչո՞ւ արցունք ցայտում են
քու սէգ հպարտ աչերից.
Ինչու արագ փախչում ես
այդ հարազատ ափերից. և այլն ։

179. — Ճոխութիւնն է զարդարուն, և մտալից և ներդաշնակ բառեր գործածել առանց շատաբանութեան և մտքի բառազարդութեան ։

Մարգարէից՝ մանաւանդ Եսայեայ գրուածը շատ օրինակներ կ՚ընծայեն ասոր ։

Օրինակ

«Ահաւասիկ տէր զօրութեանց նըստեալ ի վերայ թեթեւ ամպոյ, եկեսցէ յԵգիպտոս և շարժեսցին ձեռագործք Եգիպտացւոցն յերեսաց նորա, և սիրտք նոցա լքցին ի նոսա ։ Եւ խռովեսցին ոգիք

եգիպտացւոց յանձինս իւրեանց, և զխոր-
հուրդ նոցա ցրեցից: Եւ յիմարեսցին իշ-
խանքն Տայանու իմաստունք խորհրդա-
կանք Թագաւորին. և յիմարեսցին խոր-
հուրդք նոցա. զի՞արդ ասիցէք ցարքայն՝
թէ որդիք իմաստնոց եմք մեք: Արդ ո՞ւր
են իմաստունքք քո. պատմեսցեն քեզ և ա-
սասցեն զի՞նչ խորհուրդ խորհեցաւ տէր
զօրութեանց ի վերայ Եգիպտոսի ”:

“ Տիկնայք փափկասունք Հայոց աշ-
խարհին, որ գրգեալք և գգուեալք էին
յիւրաքանչիւր բազդեռունս և ի գահա-
ւորակս. հանապազ բոկ և հետի երթային
ի տունս աղօթից՝ անձանձրոյթ խնդրեալ
ուխտիւք զի համբերել կարասցեն մեծի
նեղութեանն: Որ ի մանկութենէ իւրեանց
սնեալք էին ուղղովք զուարակաց և ամ-
ձովք էրէոց, խոտաքուս կենօք իբրև
զվայրենիս ընդունէին զկերակուրն մե-
ծաւ խնդութեամբ, և ոչ յիշէին ամենև-
ւին զսովորական խորտիկսն: Սեւացեալ
ներկիան մորթք մարմնոց նոցա, քանզի
ցերեկ արևակէզք էին և զամենայն գիշե-
րըս գետնաբեկք: Սաղմոսք էին մշտնջե-
նաւոր մրմունջք ի բերանս նոցա, եւ

միխիթարութիւն կատարեալ՝ ընթերցուածք մարգարէից»։ (Նոդիէ։)

180. — Նրբութիւն. — Նուրբ կ'ըսուին այնպիսի խօսքեր՝ որոնց մէջ խօսքին իմաստը մասամբ ուրիշ կը քօղարկուի, այնպէս որ դիւրին ըլլայ զայն մակաբերել։ Ինչպէս մէկը հարցուց խորհրդականի մը թէ՝ Ի՞նչ բաներ անցան խորհրդին մէջ։ — Չորս ժամ, պատասխանեց միւսը, այսինքն՝ չորս ժամ պարապ անցուցինք։

Գիւղացի մը իր բոլոր ինչքը տուած էր իր չորս տղոց, և չորսն ալ ամուսնացուցեր էր՝ և տարուոյն ամէն մէկ եղանակին՝ մէկուն քովը ժամանակ կ'անցունէր։ Մէկը կը հարցունէ իրեն թէ՝ Ի՞նչպէս, աղէկ կերակրո՞ն քեզ։ — Այո՝ երբ թէ ես իրենց տղան ըլլայի, կը պատասխանէ բարի ծերունին։ Հօր մը բերանը անկէ աւելի փափուկ, նուրբ՝ զգայուն խօսք չը կրնար դրուիլ կ'ըսէ Մարմօնթէլ։

181. — Փափկութիւն. — Փափկութիւն կ'ըսուի այն տեսակ նուրբ ասացուածը՝ որ մտքէն աւելի սրտին զգացմանց հետ կը խօսի։ Լամարթինի տաղերը գեղեցիկ օրինակներ կ'ընծայեն։

Ի քոյդ, ով Լօրանս,
Ճակատ թոյլ ինձ տուր,
Զանտարբերութեանս
Զգաստ տալ համբոյր։
Թէ յամեմ յայն լուրջ,
Մի՛ շառագներ մի
Կայծիկք և յանուրջ
Որ 'ի մէնջ փախչի։
Շրթունքդ խմյուզեն
Ի քո դեղձան հերս
Զոլորտ ծաղկեղէն
Զխնկեալն յաղերս. և այլն։

Պաշեանց. Թարգ. Խորէն Ստեփանոս։

3. — Վսեմ ոճ

182. — Վսեմ ոճն այն է՝ որ երեւակայութեան բոլոր աշխոյժը և ճոխութիւնը կը թափէ ազնուագոյն մտածութիւններ և բարձր զգացումներ բացատրելու համար՝ իրենց վերջին աստիճան գեղեցկութեամբը։

Օրինակք

«Լուր երկին և ունկն դիր երկիր՝ զի տէր խօսեցաւ, որդիս ծնայ և բարձրացուցի, և նոքա զիս անարգեցին։ Ծանեաւ

եղն զատուցիչ իւր և էշ զմսուր տեառն իւրոյ, և Իսրայէլ զիս ոչ ծանեաւ։ Վա՜յ ազգին մեղաւորի. ժողովուրդ որ լի է մեղօք, սերմն ժանտ, որդիք անօրէնք. Թողէք զՏէր և բարկացուցէք զսուրբ Իսրայէլի. Երկիր ձեր աւերակ, քաղաք ձեր հրձիգք, զաշխարհն ձեր առաջի ձեր օտարք կերիցեն. աւերեալ և կործանեալ յազգաց օտարաց։

«Լքեալ թողցի դուստր Սիոնի իբրեւ զտաղաւար յայգւոջ և իբրեւ զհովանի մրգապահաց ի մէջ սեխենեաց և իբրեւ զքաղաք պաշարեալ... Յագեալ եմ ձեօք. ոչ եւս ներեցից մեղաց ձերոց. յորժամ համբառնայցէք զձեռս ձեր՝ դարձուցից զերեսս իմ ի ձէնջ, զի ձեռք ձեր լի են արեամբք»։ (Եսայի։)

«Ո՞վ են սոքա որ իբրեւ զամպս թռուցեալ են, և իբրեւ զաղաւնիս ձագախառն երամովին գան առ իս։ Ինձ ակն ունին կղզիք և նաւք Թարսսի յառաջագոյն ածել զորդիս քո ի հեռաստանէ»։ (Եսայի։)

183. Վեց ոճին մասնաւոր յատկութիւններն են. աշխուժութիւն, ամփոփութիւն, պերճութիւն, և բուռն վսեմը։

184. — Նշխօծութիւն կամ զօրութիւն է՝ քիչ բառով ազդու իմաց տալ, ինչպէս Միլտոնի հետեւեալ ոտանաւորին իմաստը։

Լաւ ՚ի դժոխս. է տիրել՝ քան թէ յերկինս լինել գերի

Այս Հոմերոսի հետեւեալ նախնեաց թարգմանութիւնը։

Եւ կապուտակին յօնօքն ակնարկեաց զրուանեանն,
Եւ աստուածային գլխոյն վարսքն շարժեցան։
Եւ մեծապէս շարժեալ տատանեցաւ Ողիմպոս։

Հակառակ բաղդատութեամբ ալ խօսքը շատ ազդու կ՚ըլլայ, ինչպէս.

«Ամէն բան կը փոխուի. միայն Աստուած է անփոփոխ։ Դարուց հոսանքը, որ մարդկային ազգը կը յափշտակէ կը տանի, անոր աչաց առջեւ կը հոսի։

«Կը տեսնէ նա ցասմամբ որ այս սրընթաց յորձանքէն յափշտակուած տկար մահկանացուք անցած ատեննին զայն կը թշնամանեն՝ այս մէկ վայրկեանը իրենց երջանկութիւն սեպելով, եւ անկէ ելնելնուն պէս՝ կ՚իյնան անոր բարկութեան եւ վրէժխնդրութեան ձեռացը ներքեւ»։

(Մասիյոն։)

Զգուշանալու է սակայն առոր չափազանցէն. չըսուիր՝ մահաբեր դաշոյնը ընդ կարմրէր կամչոյ իր տիրոջը արեանը մէջ թա-

Թաւելուն համար։ Պօղոսը Հոմերին չըլլար։

185. Ուժգնութիւն. Ուժգնութիւնըն է քաջայանդուգն հրացայտ և խիստ բուռն արտայայտութիւն ասացուածոց՝ որ կը յափշտակէ կը զարմացընէ, միով բանիւ՝ կը տիրէ մարդու զգացմանց և մըտաց վրայ։

«Ո՛վ դու, զի՛ ընդ քեզ. զի՛ ելէք դուք այժմ՝ ամենեքեան ի տանիս նանրութեան։ Լցաւ քաղաքդ գուժկանօք, քաղաքդ պերճացեալ. վիրաւորք քո՝ ոչ վիրաւորք սուսերի, և ոչ դիակունք քո՝ դիակունք պատերազմաց։ Ահաւասիկ Տէր զօրութեանց հանցէ և սատակեսցէ զքեզ այր դու, և հանցէ զպատմուճան քո և զպսակդ փառաց քոց, և ընկեսցէ զքեզ յերկիրն մեծ և յանչափ, և անդ մեռանիցիս. և արասցէ զկառսն քո զգեղեցիկս յանարգութիւն, և զտուն իշխանութեան քո ի կոխումն»։ (Եսայի։)

Այս ահաւոր և ուժգին վսեմը դըրուատելու համար խօսք չը բաւեր. Աստուծոյ Մեծութիւնը զօրութիւնը՝ մարդկային հանճարը անկէ աւելի խօսքով չը կրնար բացատրել։

Ուրիշ օրինակ

*«Կերիցէ անդրանիկ մահու զգեղեցկութիւն նորա»: — Ահաւոր դժնդակ վախճան մը՝ մահուան անդրանիկ կոչելը՝ միայն սուրբ գրոց մէջ երևցած լեզու մ՚է, և կը զարմանանք թէ ի՞նչպէս քերթողը կրցեր է մտածել: Այսպիսի վսեմի մը հասնելու համար հարկաւոր ճամբան անծանօթ է մեզի »:*

Հ. Գար. Զ. Պալտո. Ճարտասանութեան Հնդ:

Ուրիշ օրինակ

*«Մերկ են դժոխք առաջի նորա և չիք զգեստ թագստեան. եթէ արգելցէ զջուրս՝ ցամաքեցուսցանէ զերկիր, և եթէ թոյլ տայցէ՝ կորոյս զնա կործանեալ»: Կարծես թէ կը տեսնենք որ Ովկիանու անբաւ տարածութիւնը, արգելցէ և թոյլ տայցէ բառերովը մեր աչաց առջևը կը ցամաքի և կը լեցուի: Յոբայ, Եսայեայ գրքերը անթիւ այսպիսի ահաւոր վսեմներ ունին, որոնց քով թէ հին և թէ նոր քերթողահարց գրուածները աղօտ նմանութիւն մը կ՚երևին կարծես թէ:*

Օրինակ մը

«Երհաւիրք և թոմբիւնք գիշերականք, հասեալ ահ ի վերայ մարդկան։ Դողումն և սոսկումն պատահեցին ինձ, և մեծապէս զոսկերս իմ շարժեցին. եւ եկն հողմ ի վերայ երեսաց իմոց. քրտնեցին հերք իմ և մարմինք. կանգնեցայ և ոչ գիտացի, տեսի և ոչ էին կերպարանք առաջի աչաց իմոց, բայց միայն օդ եւ սօսափիւն լսէի։

«Ով անծանօթ կերպարանքը՝ օդը և սօսափիւնը խիստ ահաւոր են»։

Հ. Գար. Զ.

186. — Պերճախօսութիւնն է ճոխութիւն՝ մեծութեան հետ խառնուած, ինչպէս. «Խոնարհեցոյց զերկինս և էջ, և մէգ ի ներքոյ ոտից նորա։ Եւ ի քերովբէս թռեաւ, սլացաւ նա ի թեւս հողմոց»։ Երկինքը խոնարհեցնել և իջնե՜լ. Ինչ բացատրութիւն Աստուծոյ մեծութեան։

187. — Նոյն վեհն է վերջին աստիճանի գեղեցիկի, հրապուրիչ թագը տաղանդին, որ կը

յափշտակէ կը զարմացնէ կ'աղչեցնէ միտ-քը և երեւակայութիւնը։ Վսեմ ոճը և բուռն վսեմը իրարմէ տարբեր են։

188. — Վսեմ ոճը գրուածքի մը բոլոր ընթացքը բարձր՝ վայելուչ հրապուրիչ յօրինելն է, իսկ բուռն վսեմը մինչեւ անգամ պարզ խօսքի մը մէջ կրնայ գտնուիլ։

## Օրինակք

«Եւ ասաց Աստուած, եղիցի լոյս, և եղեւ լոյս»։ Աստուած եղիցի բառով հրաման կ'ընէ, և լոյսը իբրեւ ծառայ մը կը հը-նազանդի և դուրս կը ցոլայ։

Երկու տեսակ վսեմ կայ, մտածմանց և զգացմանց։

Մատամ տը Սէվինէէ խօսելով Թիւ-րէնի մահուանը վրայ՝ այսպէս կ'ըսէ.

«Ես այնպէս կը հաւատամ որ անիկա զարնող թնդանօթը անմահութեամբ լե-ցուած էր»։ Անահոլիկեանք կեցուած Լինդո-նո՛ն, վսեմ խօսք՝ որով կնոջ մը հանճարը մարգկայնին մօտաց և հանճարին նոր պա-տիւ մը կ'ընծայէ։

Ծերունի Որատիոսին լուր կը բերեն՝ որ երեք որդիքը Կուրիատեանց դէմ պա-

պատերազմելով երկուքը մեռան և մէկն ալ փախաւ ։ Հայրը կ'ըսկսի նզովել իր որդին. պատգամաբերը կ'ըսէ թէ՝ Ի՞նչ կրնայ ընել մէկ հոգին երեքի դէմ ։ Արատիոսը կը պատասխանէ . Թող մեռնէր ։ Այս բառը մարդկային հանճարին ամենէն վսեմ ստեղծուածն է, կ'ըսէ երեւելի գրագէտ մը ։

Այս գործոյս վերջը կը խնդրենք մեր սիրուն երիտասարդութենէն, որ ընտիր ոճ ունենալու համար յաճախ կարդան Սուրբ գրոց՝ Յոբայ, Եսայեայ, Սողոմոնի Երգերգոցը, և այլն ։

Իսկ Թարգմանութեան մէջ Հոմերոս, Վիրգիլիոս, Միլդոնի, Ռասինի եւ Քորնէյլի Թատերգութիւնքը, Լամարթին և այլն . լեզուագիտաց համար ասպարէզը բաց է և անհուն ։

Ինչպէս շատ անգամ ըսած ենք, նոյնը կը կրկնենք՝ ընտիր հեղինակաց յաճախ և խորհրդով ընթերցումը ամէն կանոնէ աւելի զօրաւոր և իմաստուն ուսուցիչ է, և չկայ կանոն մը որ անոր տեղը բռնէ ։

## ՎԵՐՋ